# Իմ ուսուցիչը



ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

*Հեղինակն այս պատմվածքը նվիրում է իր թանկագին ուսուցիչ Գայանե Պահլավունու հիշատակին*

*Հիմա ծերացել է, մազերը ճերմակել են, ճակատը՝ կնճռոտ, միայն աչքերի մեջ դեռ բոցկլտում է երիտասարդական կրակը ու, երբ փորձում պատասխանում է իմ հարցալից բառերին, շուրթերին խաղում է փոքր-ինչ խորամանկ ժպիտ։*

*— Նազարյա՛ն, «անբավարար»,— դեռ ականջիս հնչում է նրա երիտասարդական ձայնը, ու ես ինձ տեսնում եմ դասարանում ակկած, դեմքիս իբր թե անփույթ արտահայտություն։*

*Նա իմ ուսուցիչն է։ Այն ժամանակ ինձ թվում էր, թե մենք այնքան էլ բարեկամներ չենք, ավելին, թվում էր, թե թշնամիներ ենք։ Դե, նա «անբավարար» թվանշան նշանակողն էր, ես՝ «անբավարար» թվանշան ստացողը։*

*— Ընկեր Բաղդասարյանը ինձ հետ ընկած է,— հավատացնում էի մորս ամեն քառորդի վերջում գնահատականների թերթիկն ստանալիս, իսկ մայրս, որ ինձ աշխարհի ամենաընդունակ տղան էր համարում, հալած յուղի տեղ էր ընդունում ասածս ու գլուխն օրորում.*

*— Չա՜, ամոթ չի՞, ի՞նչ է ուզում էդ անիրավն էս երեխից։*

*Այսպես ապրում էինք՝ ընկեր Բաղդասարյանն իր համար, աշակերտ Արամ Նազարյանն իր համար, մայրս՝ իր։ Միայն, խոստովանենք լինի, մայրս թաքուն անիծում էր ուսուցիչ Հայկազ Բաղդասարյանին։*

* * *

*Գլոբուսը երկրագունդ է, միայն, իհարկե, միլիոն-միլիոն անգամ փոքրացրած։ Հետո, գլոբուսի ներսը դատարկ է, մեկ էլ նրա վրա եղած քաղաքներում չի կարելի ապրել, գետերում ու ծովերում չի կարելի լողանալ, դրանք գունավոր կետեր ու գծեր են։ Եվ գլոբուսը կարելի է թռցնել, մանավանդ որ հենց այդ գլոբուսի պատճառով եմ անընդհատ «անբավարար» գնահատականներ ստանում։*

*— Ցո՛ւյց տուր Ուրալը։*

ՄԱՐՏ
№ 3 1965 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
43-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

*Ես գիտեմ, որ Ուրալը լեռնաշղթա է: Մատս սահեցնում եմ փոքրիկ երկրագնդի վրայով: Ո՛չ մի բարձունք, ո՛չ մի խորություն: Դե եկ ու հարթության վրա լեռնաշղթա նկատիր. այն էլ այնպիսի լեռնաշղթա, որի վրայով մրջյունը կանցնի մի ակնթարթում:*

*— Նազարյա՛ն. «անբավարար»...*

*Ես գլոբուսը թռցրի ու պահեցի ներքնահարկում, վառելափայտերի տակ: Հաջորդ օրը դպրոցի վարիչ Թաչիկյանը նկատություն էր արել Բաղդասարյանին ու տնտեսվար Միքայելին խանութ էր ուղարկել նոր գլոբուս գնելու:*

*— Նազարյա՛ն, «անբավարար»...*

*Ես երկրորդ գլոբուսն էլ թռցրի ու թաքցրի նույն ներքնահարկում, նույն փայտերի տակ:*

*Այս անգամ դպրոցում աղմուկ բարձրացավ: Ուսուցչանոցից լսվում էր բարկացած վարիչի ձայնը.*

*— Դուք առանձին վարձատրություն եք ստանում որպես աշխարհագրական կաբինետի ղեկավար, դուք պարտավոր եք հսկել, ես չեմ կարող շաբաթական մի գլոբուս գնել:*

*Բաղդասարյանը չէր պատասխանում: Վերջապես Թաչիկյանն ասաց.*

*— Նոր գլոբուսը կգնեք ձեր փողով:*

*Վարիչը դուրս եկավ ուսուցչանոցից ու դուռն ամուր շրխկացրեց: Հետո նա միջանցքում նկատեց ինձ ու ընկերոջս՝ Համոյին:*

*— Այստեղ ի՞նչ եք անում, ինչո՞ւ դասի չեք:*

*Մենք ոչինչ չէինք կարող պատասխանել, քանի որ դասից փախել էինք: Նա կարգադրեց ծնողներիս դպրոց բերել և ամպի նման մռայլ հեռացավ:*

*Հաջորդ օրը Համոյի մայրն ու իմ հայրը, ինձ ու Համոյի հետ, վարիչի առանձնասենյակում էին: Իմ հայրն իսկի էլ իմ հայրը չէր, դա մեր հարևան թիթեղագործ Գասպարն էր, որ համաձայնել էր դպրոց գալ հորս փոխարեն: Ես հորիցս վախենում էի ու այդ «փոխանակությունը» գլուխ բերելու համար Գասպարին խոստացել էի մի ամբողջ շաբաթ դասերից հետո փչել նրա արհեստանոցի փուքը:*

*— Ինչ վերաբերում է ձեր որդուն, ընկե՛ր Նազարյան,— բարկացած ասում էր դպրոցի վարիչը ինքնակոչ հորս,— ապա պիտի ասեմ, որ գործը դժվար է, շատ է դժվար: Ահա, նայեցե՛ք մատյանին: Թվաբանությունից «անբավարար», հայոց լեզվից «անբավարար», աշխարհագրությունից «անբավարար»... Երգեցողությունից «բավարար»:*

Գասպարը գրագետ չէր, թեև հորթի նման չռած աչքերով նայում էր մատյանին ու գլուխն օրորում։

Դեռ Խաչիկյանը կշտամբում էր մեզ, դեռ Գասպարը տարուբերում էր գլուխը՝ վշտացած ծպպացնելով, երբ հանկարծ դռների մեջ երևաց մեր ուսուցիչը։ Նրա ձեռքին մի նոր գլոբուս կար, իսկ շուրթերին՝ ներողամիտ ժպիտ։

— Ընկե՛ր Խաչիկյան,— ասաց նա,— գլոբուսը գնեցի։

Ես կուզենայի դուրս թռչել առանձնասենյակից։ Բաղդասարյանը մեր տնից հեռու չէր ապրում, ճանաչում էր մերոնց և, իհարկե, լավ գիտեր, որ Գասպարն իմ հայրը չէ։ Բայց վարիչի առանձնասենյակը գտնվում էր երկրորդ հարկում, երկրորդ հարկի պատուհանից դուրս չես թռչի, իսկ ուսուցիչս դեռ կանգնած էր առանձնասենյակի դռների մեջ ու խորամանկ աչքերով նայում էր ինձ ու Գասպարին։

— Կանչել եմ Լալայանի ու Նազարյանի ծնողներին,— ասաց դպրոցի վարիչը,— ընկե՛ր Բաղդասարյան, դուք նրանց անելու բան չունե՞ք։

Ես այրվում էի ամոթից, Գասպարը գլուխը կախել էր։

— Ես նրանց հետ հետո կզրուցեմ,— ասաց ուսուցիչս՝ ուղիղ Գասպարին նայելով։

— Լավ,— համաձայնեց Խաչիկյանը,— գլոբուսը թողեք իմ առանձնասենյակում։

— Ինչու՞։

— Դարձյալ չգողանան։

— Չեն գողանա,— ինձ նայելով ասաց ուսուցիչս ու գլոբուսը գրկած՝ դուրս եկավ։

Գասպարը թեթևացած շունչ քաշեց։ Խաչիկյանը ճանապարհ դրեց նրան ու Համոյի մայրիկին, իսկ ինձ ու Համոյին կարգադրեց գնալ դասի։

* * *

Գլոբուսը երկրագունդ է, միայն, իհարկե, միլիոն-միլիոն անգամ փոքրացրած։ Ես երկու երկրագունդ թաքցրել եմ դպրոցի ներքնահարկում, փայտերի տակ, բայց ահա ուսուցչի սեղանին դրված երրորդ երկրագունդը դասարանի ամենալավ աշակերտի՝ Կորյունի ձեռքի հպումով պտտվում է իր առանցքի շուրջը։ Կորյունի կողքին կանգնած Բաղդասարյանը գոհունակությամբ օրորում է գլուխը, մինչդեռ ես զգում եմ, որ ականջներս կարմրել են ամոթից ու տաքությունից։ Ի՞նչ կլինի, եթե ուսուցիչս բաց անի գաղտնիքը, չէ՞ որ նա ասում է ինձ և լավ է ճանաչում հորս ու մեր հարևան թիթեղագործին։ Ամեն վայրկյան սպասում եմ ամոթալի մերկացման, դասն անցնում է տարափի մեջ, վերջապես զանգը հնչում է։

— Նազարյան,— ասում է ուսուցիչս,— գլոբուսը տար աշխարհագրական կաբինետ։

Նա դուրս է գալիս։ Սկսվեց, մտածում եմ ես, դեռ լավ է, որ դասարանի առաջ խայտառակ չարավ։ Գլոբուսը տանում եմ աշխարհագրական կաբինետ, բայց ուսուցիչս այնտեղ չէ։

Ու գլորվում են օրերը։ Իմ տարափն աստիճանաբար մարում է, բայց մնում է ամոթն ու ինչ-որ խայթ սրտիս մեջ։ Հակառակի նման Բաղդասարյանը միշտ ինձ է հանձնարարում գլոբուսը աշխարհագրական կաբինետ տանել։

Այդպես էլ նա ոչինչ չասաց։ Ու թերևս այդ էր պատճառը, որ սկսեցի պարապել։ Ես ուզում էի սովորել դասարանի ամենալավ աշակերտի՝ Կորյուն Առաքելյանի նման, որ իմ ձեռքի հպումով էլ իր առանցքի շուրջը պտտվի գլոբուս երկրագունդը, որ կողքիս կանգնած ուսուցիչս գոհունակությամբ օրորանբացնի գլուխն ու անձայն շշնջա.

— Ապրիս...



Նկ. ՎԱՀԵ [illegible]

Գլոբուսի վրա ո՛չ քաղաքներ կան, ո՛չ խորություններ, բայց գույները տարբեր են, լեռնաշղթաները՝ շագանակագույն և որքան մուգ է գույնը, լեռն այնքան բարձր է։ Ծովերը՝ կապույտ, և որքան մուգ է գույնը, ծովն այնքան խոր է... Դժվար չէ ամենևին պարզապես պետք է ուշադիր լինել. պարզապես պարապել է հարկավոր։

Մայրս զարմացել է։ Ես կպել եմ դասագրքերին և դուրս չեմ գալիս։

— Էդ ի՞նչ ես կարդում,— հարցնում է մայրս։

— «Աշխարհ»։

— Կարդա, կարդա, էդ անիրավը ընկած է հետդ:

Կարդում եմ ամոթից կարմրած ու երազում, որ «հետս ընկած էդ անիրավը» ինձ դաս հարցնի:

Ու վերջապես մի օր հարցնում է:

Գլոբուսի վրա ո՛չ բարձունքներ կան, ո՛չ խորություններ, բայց ես արդեն ճանաչում եմ նրա գույները: Իմ ձեռքի հպումով գլոբուս-երկրագունդը պտտվում է իր առանցքի շուրջը: Բառերս խառնվում են իրար, ես ուզում եմ միանգամից ասել ամբողջ իմացածս, ասել նաև ուրիշ, ուրիշ շատ բաներ Բաղդասարյանին... Ինչո՞ւ է խզվում ձայնս, ինչո՞ւ է կոկորդս խուտուտ գալիս... Բաղդասարյանը ժպտում է ինչ-որ տարօրինակ ժպիտով, գլուխը տմբտմբացնում ու մեկ էլ հանկարծ ընդհատում է.

— Նստի՛ր, ապրիս, «բավարար»:

Հարբածի նման գնում եմ տեղս: Զանգը հնչում է: Այսօր ուսուցիչս Կորյունին է կարգադրում գլոբուսն աշխարհագրական կաբինետ տանել:

* * *

Երեկո է:

Դպրոցի պահակ Երեմ բիձան իր սենյակում ննջում է թիթեղե վառարանի առաջ: Ամենք. եթե նա դուրս էլ լինի, ինձ չի կարող նկատել, ես դեպի ներքնահարկը տանող գաղտնի ճանապարհ գիտեմ: Փայտերը ես եմ տանում, իմ գլոբուսներն այնտեղ են. ես հանում եմ դրանք, ձեռքիս՝ երկու երկրագունդ, դուրս եմ գալիս ներքնահարկի նեղլիկ պատուհանից ու նոր եկած ձյունը տրորելով քայլում դատարկ փողոցով:

Քիչ հետո ես կանգնած եմ նրա դռան առաջ, հուզմունքից ձեռքերս դողում են, սիրտս թփթփում է:

Նա դուռը բաց է անում, հանգիստ նայում ինձ ու իմ երկու երկրագնդին, ապա լուռ շարժվում է դեպի իր գրասեղանը:

Ես գլոբուսները դնում եմ գրասեղանին.

— Ընկե՛ր Բաղդասարյան...

Ու, չգիտեմ ինչու, հանկարծ լաց եմ լինում:

Նա երկար հանգստացնում է ինձ, շոյում է խառնված գլուխս: Հետո միասին դուրս ենք գալիս տնից: Քայլում ենք ամայի, ձյունոտ փողոցով: Ես չեմ խոսում. իսկ նա ասում է, որ գլոբուսները մենք կուղարկենք լեռնային շրջանների հեռավոր գյուղերը, կուղարկենք գաղտնի. որ ո՛չ ոք, ո՛չ ոք չիմանա...

· 1964 ·

ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ · 1964 · ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ · 1964 ·

«ՊԻՈՆԵՐ» ամսագրի 1964 թվականի լավագույն նկարչական աշխատանքի մրցանակը շնորհվեց վաստակավոր նկարիչ ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻՆ՝ «Լուսամուտը և ծին» պիեսի նկարազարդման համար:

«Ցանկապատը», «Նկուղի աստիճանների վրա», «Իմ վերարկուն փոքրացել է» պատմվածքների համար երիտասարդ արձակագիր ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆԸ արժանացավ լավագույն գրական ստեղծագործության մրցանակին:

· 1964 ·



# ՆՈՐԵԿԸ

ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Դասարանում մի օր էլ լուր տարածվեց, որ շուտով մի նորեկ է գալու: Ես հիմա, իհարկե, չեմ հիշում, թե այդ մասին ով ասաց առաջինը: Եվ, ճիշտն ասած, դա այնքան էլ կարևոր չէ: Իսկ թե շատ եք ուզում իմանալ, խնդրեմ, իմ կարծիքով, դա Նվարդն էր: Նա միշտ էլ առաջինն է իմանում ամեն տեսակի նորությունները: Չգիտեմ որտեղից, բայց իմանում է: Դպրոց գնալիս մենք երբեմն հանդիպում ենք իրար, ու այդ օրերին նորությունը ես իմանում եմ երկրորդը: Ու տղաներն էլ, գիտեմ, նախանձում են ինձ:

Անցավ մի քանի օր, և մենք սկսեցինք անհանգստանալ: Նորեկը դեռ չկար: Սկսեցինք հիշել, թե ով ասաց այդ նորությունը: Եվ իսկույն էլ զգացինք, որ մոռացել ենք: Աղջիկները մեր վեճին չէին մասնակցում: Դասամիջոցներին, երբ մենք տաքացած վիճում էինք, նրանք, իրենց սովորության համաձայն, քաշվում էին միջանցքի պատուհաններից որևէ մեկի մոտ ու առանց հոգնելու փսփսում:

Իսկ մենք վիճում էինք, որովհետև համոզված էինք, որ նորեկն անպայման աղջիկ է լինելու: Ես, իհարկե, հիմա չեմ հիշում, թե ով առաջինը արեց այդ ենթադրությունը: Դա էլ կարևոր չէ: Բայց ես համոզված եմ, որ Տիգրանն էր: Նա նստում է երրորդ շարքի վերջին նստարանին: Մենակ է նստում: Ու կարծում է, որ եթե դասարանում մի նորեկ գա և մեր դաստիարակչուհին էլ նրան նըստեցնի Տիգրանի կողքին, ապա դա անպայման աղջիկ է լինելու:

Ես առավոտները սովորականից շուտ էի դուրս գալիս տնից ու սպասում փողոցի անկյունում, որպեսզի հանդիպեմ Նվարդին: Նա միշտ դպրոց էր գալիս իր փոքրիկ քրոջ՝ Լիլիթի հետ: Ու մի երկու օր ես չէի համարձակվում խոսել նորեկի մասին: Ես շատ էի ուզում գոնե երկրորդն իմանալ մի որևէ նորություն այդ նորեկի մասին: Բայց չէի համարձակվում խոսք բանալ, որովհետև Նվարդին լավ էի ճանաչում: Երբ նրանից մի բան եմ հարցընում, ասենք, թե «Հրազդանում» երկու շաբաթ հետո ինչ նկար է ցուցադրվելու, ուղղակի պատասխանելու փոխարեն, սկսում է հանդիմանել, թե ինչու, ասենք, անցյալ օրը թվաբանությունից «երեք» ստացա: Եվ այն էլ քրոջ՝ Լիլիթի մոտ, որը դեռ երրորդ դասարանումն է սովորում և դեռ փոքր է, ու կարիք չկա, որ մասնակցի մեծերի թեկուզ այդ կարգի խոսակցությանը:

Ես էլ սկսում եմ կիսաձայն բացատրել, որ թվաբանությունից «չորս» կամ «հինգ» ստանալը ընդունակությունների հարց է: Ես մեղավո՞ր եմ, որ անընդունակ եմ ծնվել: Պարապում եմ, պարապում, բայց չի ստացվում: Դա էլ իմ դժբախտությունն է: Դեռ մարդիկ պետք է գոհ լինեն, որ «երկուսներ» չեմ ստանում: Ես, օրինակ, շատ գոհ

եմ: Գիտե՞ք ինչու. որովհետև «երկուս» ստանալը, այնուամենայնիվ, տխուր բան է: Շա՜տ տխուր:

Մի խոսքով, ոչ մի կերպ չկարողացա որևէ լուրջ բան իմանալ Նորեկի մասին:

Մենք արդեն հոգնել էինք դասամիջոցներին տղաներով իրար գլխի հավաքված վիճելուց: Հոգնելուց բացի, մի նոր թեմա էր բացվել: Երևի ձեզ կհետաքրքրի, թե ում մասին էինք խոսում: Շարլ Ազնավուրի: Երևի, մենք շուտով երկու բանակի բաժանվեինք ու աղմուկ ու վեճ սկսվեր երգիչի մասին, եթե մի օր էլ մեր ուսուցիչը դասի վերջում չհայտներ, թե հաջորդ ժամին գալու է Նորեկը:

— Ուռա՜, ուռա՜,— բղավում էին տղաները:

— Իմ կողքին է նստելու: Տեղ փոխել չլինի,— ամեն մեկին առանձին մոտենալով հայտարարում էր Տիգրանը:

Իսկ աղջիկները դարձյալ քաշվեցին միջանցքի պատուհանի մոտ ու սկսեցին իրենց փսփսոցը:

Թե ինչի՞ մասին, չգիտեմ:

Հենց որ զանգը տվեց, մենք բոլորս էլ նստած էինք մեր տեղերում և համբերությամբ սպասում էինք:

Մի փոքր ուշացումով դասարան մտավ մեր դասղեկուհին, իսկ նրա հետևից էլ... Նորեկը:

Նրան տեսնելուն պես շրջվեցի ու նայեցի Տիգրանին: Խե՜ղճ Տիգրան: Նա գունատված, հուսահատ հայացքով, շփոթմունքից շրթունքները կծոտելով, նայում էր չգիտեմ, թե ուր:

Իսկ Նորեկը...

Նորեկը հիմարի պես կանգնել էր գրատախտակի մոտ: Հապա էլ ինչպե՞ս պետք է կանգնած լիներ: Ախր նա մի սովորական ռոբոտ էր: Հարթ, փայլուն մետաղե մարմնով, անճոռնի ոտքերով ու ձեռքերով, լուցկու տուփի նման գլխով, իսկ աչքերն էլ հենց որ մեքենայի հետևում դրված կարմիր լուսարձակները լինեին, որոնք սկսում են վառվել, երբ վարորդը սեղմում է արգելակման լծակ

— Երեխանե՛ր,— ասաց մեր դասղեկուհին.— Աբին սովորելու է ձեզ հետ: Դասամիջոցին կծանոթանաք նրա հետ: Իսկ հիմա, Աբի,— մեր դասղեկուհին հայացքը շրջեց դասարանում, այդ հայացքը որոնում էր, թե ուր կարելի է նստեցնել ռոբոտին,— գնա՛ և նստի՛ր երրորդ շարքի վերջին նստարանին: Տիգրանի մոտ:

Ռոբոտը առանց ուշադրություն դարձնելու Տիգրանի խեղճացած տեսքին, դանդաղ ու ծանր քայլվածքով, ճռճռացնելով դասարանի հատակը, քայլեց դեպի վերջին նստարանն ու բազմեց Տիգրանի կողքին:

... Քառասունհինգ րոպեն այնքան դանդաղ անցավ, որ ես արդեն հույսս կտրել էի, թե այսօր զանգը կտան: Նույնիսկ Նվարդը չէր համբերում, որովհետև շշուկով ասաց. «Երևի հոսանք չկա»: Այս լուրն անմիջապես տարածվեց ամբողջ դասարանում, ու մենք անհանգստացած իրար նայեցինք: Ռուբիկը, որ նստած էր անջատիչի մոտ, կռահեց, որ անհրաժեշտ է ստուգել՝ հոսանք կա՞, թե՞ ոչ: Ու երբ մեր դասղեկուհին գրատախտակին գրում էր տնային հանձնարարությունները, Ռուբիկը աճապարանքով պտտեց սև կոճակը:

Դասարանում վառվեցին և մարեցին էլեկտրական լամպերը, բայց այդ միայն մենք նկատեցինք, որովհետև արևի ճառագայթների տակ լույսը շատ թույլ էր, աննշմարելի:

Վերջապես, զանգը տվեց: Մեր դասղեկուհին մոտեցավ ուսուցչական սեղանին ու ասաց.

— Երեխանե՛ր, Աբիին մեզ մոտ ուղարկել են գիտնականները: Նա ձեզ հետ պետք է սովորի: Ընկերություն արեք նրա հետ: Դա շատ անհրաժեշտ է գիտության համար:

Դասամիջոցին աղջիկները անմիջապես մոտացան միջանցքի պատուհանի մոտ իրենց փսփսալու սովորության մասին և այնպես շրջապատեցին Աբիին, որ մենք՝ տղաներս, ստիպված ետ քաշվեցինք ու, որպեսզի տեսնենք ռոբոտին, բարձրացանք նստարանների վրա ու լուսամուտագոգին:





# ԾԻԾԵՌՆԱԿԸ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

— Գարո՜ւն, գարո՜ւն, տաք է այնքան,
Բացվեց լեռան սև կոնակը,
Թռչունները հեռվից եկան,
Ո՞ւր է իմ լավ ծիծեռնակը:
Ես բացել եմ գարնանը վաղ
Մեր տանիքի նոր դռնակը,
Որ իր բույնը դառնա ուրախ
Իմ սիրունիկ ծիծեռնակը:
— Վա՜յ, իմ մանուկ, ես այդ գիտեմ,
Հիշում է նա ձեր Վանիկին,

Նա մեր գյուղն է դարձել արդեն,
Բայց չի նայում այս տանիքին:
Ա՜խ, վատություն Վանիկն արավ
Ծիծեռնակին անցյալ տարի.
Նա ձվերը բնից տարավ,
Չթողեց, որ ձագեր հանի:
Հիմա թեկուզ միշտ բաց պահես
Ձեր տանիքի նոր դռնակը,
Էլ ետ չի գա առաջվա պես
Քո սիրունիկ ծիծեռնակը:





Ռոբոտը հաճույքով պատասխանում էր աղջիկների անթիվ-անհամար հարցերին, թեև նրա դեմքը շատ բութ էր ու հիմար, բայց պատասխաններն ապշեցնում էին մեզ:

— Քանի՞ տարեկան ես, Աբի՛:

— Երեք ամսական:

— Պաղպաղակ սիրու՞մ ես, Աբի՛: Ես որ ուզենամ, օրական տասը հատ կուտեմ:

— Չի կարելի,— պատասխանում էր Աբին:— Կմրսես ու թոքերի բորբոքումով կտառապես:

— Աբի՛, տղաների՞ հետ ընկերություն կանես, թե՞ աղջիկների:

— Բոլորի հետ էլ ընկերություն կանեմ:

Այս պատասխանից հիասթափվեցինք թե՛ մենք՝ տղաներս, և թե՛ աղջիկները: Միայն Աբիի պես ռոբոտը կարող էր այդքան հիմար բան ասել:

— Աբի՛, երկուսին գումարած երկու ինչի՞ է հավասար,— գոռացի ես Լուսամուտագոգից, որպեսզի ապացուցեմ, թե նա այնքան բութն է, որ այդքան հասարակ բանն էլ չգիտե:

— Չորս,— պատասխանեց Աբին:

— Իսկ հինգի քառակուսի՞ն,— բղավեց Տիգրանը՝, աչքով անելով ինձ:

— Քսանհինգ:

Մենք, տղաներս, շփոթվեցինք:

— Սպասե՛ք, սպասե՛ք— մեջ ընկավ Ռուբիկը:— Իսկ ինչի՞ է հավասար երկու հարյուր տասնմեկ անգամ հիսունհինգ:

— Տասնմեկ հազար վեց հարյուր հինգ:

Աղջիկները քրքջացին, իսկ մենք նայեցինք իրար:

— Թվաբանությունից լավ է,— կերկերացող ձայնով նկատեց Ռուբիկը:— Էվրիկա...

— Ի՞նչ էվրիկա,— զարմացա ես:

— Չգիտե՞ս, Արքիմեդն է այդպես ասել,— պատասխանեց Ռուբիկը:— Նշանակում է, որ խելոք միտք է ծնվել մարդու մեջ:

— Ուրեմն, հիմա դու խելոք մի՞տք ունես:

— Իհարկե, մեր խնդիրները կտանք, որ Աբին վճռի:

— Կեցցե՜ Աբին,— հանկարծ գոռացինք մենք ու թփթփացրինք ոտքներս:

Մենք չէինք լսել, որ զանգն արդեն տվել է ու չէինք էլ նկատել, որ արդեն դասարան է մտել աշխարհագրության ուսուցիչը: Լուսամուտագոգին թռչկոտողներիս նա որպես պատիժ կանգնեցրեց գրատախտակի երկու կողմերում, իսկ նրանց, ովքեր կանգնել էին նստարանների, խնայեց, որովհետև, եթե



# Ով ինչ կուզի

ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ

Կատուն ասաց.
— Մո՛ւկ կուզեմ:
Շնիկն ասաց.
— Ձո՛ւկ կուզեմ:
Հավիկն ասաց.
— Կո՛ւտ կուզեմ:
Աղվեսն ասաց.
— Ճո՛ւտ կուզեմ:
Ծիտիկն ասաց.
— Բո՛ւն կուզեմ:
Որսկանն ասաց.
— Շո՛ւն կուզեմ:
Բադիկն ասաց.
— Ջո՛ւր կուզեմ:
Զինվորն ասաց.
— Թո՛ւր կուզեմ:

Բրդոտն ասաց.
— Տա՛նձ կուզեմ:
Ագահն ասաց.
— Գա՛նձ կուզեմ:
Սագիկն ասաց.
— Լո՛ղ կուզեմ:
Մաճկալն ասաց.
— Հո՛ղ կուզեմ:
Դարբինն ասաց.
— Սա՛լ կուզեմ:
Կալվորն ասաց.
— Կա՛լ կուզեմ:
Քարտաշն ասաց.
— Քա՛ր կուզեմ:

Դերձակն ասաց.
— Կա՛ր կուզեմ:
Արծիվն ասաց.
— Սա՛ր կուզեմ:
Եղնիկն ասաց.
— Պա՛ր կուզեմ:
Հնձվորն ասաց.
— Ա՛րտ կուզեմ:

Սոխակն ասաց.
— Վա՛րդ կուզեմ:
Ծաղիկն ասաց.
— Շա՛ղ կուզեմ:
Արամն ասաց.
— Խա՛ղ կուզեմ:
Սուրիկն ասաց.
— Չի՛ր կուզեմ:
Համիկն ասաց.
— Գի՛ր կուզեմ:

նրանց էլ պատժեր. գրատախտակի մոտ կանգնելու տեղ չէր լինի:

Ես կարծում էի, թե մի քանի օր անց, մենք բոլորս էլ կվարժվենք Աբիի ներկայությանը ու նա, ինչպես ամեն նորություն, որ դառնում է սովորություն, կդադարի մեզ հետաքրքրելուց:

Բայց ստացվեց հակառակը:

Ու դա պարզվեց այն օրը, երբ ես առավոտյան դարձյալ հանդիպեցի Նվարդին: Ես մի քիչ եղանակից խոսեցի, բայց Նվարդը առանց ուշադրության դարձնելու իմ ասածների վրա, անհանգստությամբ հայտնեց, որ Աբին արտակարգ հիշողություն ունի ու բոլոր առարկաներն էլ յուրացնում է տեղն ու տեղը, հենց դասարանում:



Ես զարմացա, թե նա որտեղից գիտե, որ Աբին յուրացնում է: Նրան ոչ մի ուսուցիչ դաս չէր հարցնում: Նվարդն ասաց, որ ճիշտ է, ուսուցիչները չեն հարցնում, բայց գիտնականները շաբաթը մեկ քննում են նրան: Այս նորությունը ցնցեց ինձ: Բայց ես հանկարծ զգացի, որ սա էլ մի նորություն է, որի մասին ես երկրորդն եմ իմանում Նվարդից հետո, և շատ ուրախացա:

Այդ նույն օրը տղաներով արտակարգ խորհուրդ գումարեցինք: Ես նորությունը հայտնեցի ու հպարտ-հպարտ նայեցի նրանց:

Բայց գործը փչացրեց Տիգրանը:

— Իհարկե ոչ մի չափ էլ չկանք: Գիտնականներին քննություն է հանձնում, այն էլ՝ ամեն շաբաթ, իսկ մենք երբեմն չենք կարողանում դաս պատասխանել:

Նա, իհարկե, սուտ էր: Գոնե Տիգրանը միշտ էլ «գերազանց» էր ստանում: Եթե իմ մասին ասեր կամ Ռուբիկի...

Դեռ խնդիրներն էլ նրան ենք տալիս, որ վճռի:— հանկարծ ասաց չխոսկան Վահանը:

— Այո՜...— ծոր տվեցի ես, զգալով, որ ոտքերիս տակից գետինը փախչում է: Հիմա մի բան կվճռեն ու պրծավ... Կսկսվի նույն պատմությունը:— Բայց Աբին ուղղակի օգնում է մեզ.—եղքը գտա ես:—Դա ընկերական օգնություն է: Եվ շատ գովելի:

— Ճիշտ է.— հաստատեց Ռուբիկը:

— Իսկ ինչու՞ աղջիկները այդ օգնությունից չեն օգտվում.— դարձյալ խոսեց Վահանը:

Ես նյարդայնացա: Ոչ թե Վահանի ասած նորությունից: Ես մի տեսակ բարկացա, որ նա այսօր

այդքան շատ խոսեց: Կարևոր մի հարց վճռելիս շատախոսությունը սովորաբար փչացնում է գործը: Ա՛յ, ինչպես հիմա:

— Իսկապես,— հանկարծ բոլորն էլ մտահոգվեցին:

— Ու մեզ վրա էլ երևի ծիծաղում են,— ասաց Տիգրանը:

— Գուցե ամբողջ օրն էլ հենց ա՛յդ մասին են փսփսում,— ենթադրեցի ես ու իսկույն զգացի, որ այս անգամ գործը տապալեցի ինքս:

— Հա՞,— հարցրեց Տիգրանը:

Ես չպատասխանեցի:

— Իսկապես,— ասաց Տիգրանը:— Իսկ մենք ինչո՞վ ենք պակաս աղջիկներից:

Վե՛րջ:

Այլևս որևէ բան հարթել չի լինի:

Կորանք:

Ու այդ պահից ես այլևս չեմ հիշում, թե ինչով ավարտվեց մեր արտակարգ խորհուրդը:

Մի երկու օր էլ գլուխ պահեցի: Բայց դասերը ոստիկանների պես հսկում էին ինձ: Առաջ գոնե պատահում էր այնպես, որ դաս չէին հարցնում ու ես պրծնում էի: Իսկ հիմա ամեն մեկը իրեն իրավունք էր վերապահում հարցաքննել մյուսին: Խայտառակություն...

Իսկ Աբին իր անկյունում նստած միայն աչքերն էր թարթում: Ո՜ւհ, ոնց կհասցնեի նրան... Բայց ի՞նչ օգուտ: Հո մարդ չէ՞ր... Միտաղե մի մեքենա...

Տեսա, որ այլևս ճար չկա ու հենց առաջիկա կիրակի օրը առավոտից նստեցի տքնելու: Տքնում էի ու կատաղում ինքս իմ մեջ: Բայց երբ պատկերացնում էի, որ նույնիսկ Ռուբիկը առավոտյան մտնելու է ու հարցնելու պատմությունից կամ քերականությունից, կատաղությունս մի քիչ անցնում էր, և հանկարծ բոլորովին անցավ, ու ես հանկարծ այնպես ուրախացա, որ լուծեցի նույնիսկ ավազանների մասին եղած խնդիրը: Ինքս լուծեցի, առանց օգնության: Կատաղեցի, կատաղեցի ու խնդիրը լուծվեց:

Հետևյալ օրն առավոտյան սովորականից շուտ դուրս եկա տնից ու փողոցի անկյունում սպասեցի, որպեսզի հանդիպեմ Նվարդին:

Քիչ անց, նա դուրս եկավ իրենց շքամուտքից երրորդ դասարանցի քրոջ՝ Լիլիթի հետ:

— Ես մի նորություն ունեմ,— ասացի Նվարդին:

Ու նրա՛ն երևի այնքան էլ դուր չեկավ, որ այդ նորությունը ինքը երկրորդն է իմանալու:

Գիտեմ,— ասաց նա:— Մեր փողոցի մոտի հրապարակում Կոմիտասի արձանն են դնելու:

— Ո՛չ,— ասացի ես:

Նա մի քիչ մտածեց ու ասաց.

— Գիտեմ... «Պիոներ» ամսագիրը մրցանակ է տալու վեցերորդ դասարանցի Արմենին:

— Ի՞նչ գիտես:

— Ինքն է ասել: Մի նկար է ուղարկել խմբագրությանը, որպեսզի անպայման մրցանակ ստանա: Սա էր, չէ՞, նորությունը,— ուրախացավ Նվարդը:

— Ո՛չ:

Նվարդը շփոթվեց ու սկսեց խաղալ ժապավենի հետ: Այնքան խաղաց, որ ժապավենը քանդվեց: Նա բարկացավ, ու ես զգացի, որ եթե լաց լինի, ապա պատճառը համարելու է ժապավենի քանդվելը և ոչ թե այն, որ նորությունը միայն ես գիտեմ:

Ես որոշեցի այլևս չտանջել նրան ու ասացի.

— Գիտե՞ս, ախր իմ ընդունակությունները այնքան էլ քիչ չեն: Զարմանո՞ւմ ես... Ինձ թվում էր, որ... Համեստ ընդունակություն ունեմ: Բայց պարզվեց, որ...

— Հանճարե՞ղ ես,— ծաղրեց Նվարդը ու ծիծաղեց: Նա հիմա չէր բարկանում, որ ժապավենը քանդվել է:

— Չէ՛, այդ չեմ ուզում ասել: Ախր, որ ուզենամ, երևի Աբիից ես կանցնեմ: Ոնց գլխի չէի ընկել...

Դա ինչ նորություն է, ո՞ր... —հանկարծ ասաց Նվարդը:

— Ինչպե՞ս թե:

— Իսկական նորությունը գիտե՞ս որն է:

— Ասա՛:

Նա ձևացրեց, թե չի ուզում ասել: Բայց գիտեի, չի համբերելու:

— Իսկական նորությունը...— ծոր տվեց նա:— Իսկական նորությունը այն է, որ Աբին՝ բանաստեղծություններ է գրում:

— Չէ՛, չէ՛...

— Ու այդ բանաստեղծություններն էլ նվիրել է ինձ,— ասաց Նվարդը, և քրոջ ձեռքը բռնած՝ վազելով մտավ դպրոցի բակը:



Դիդո Սոտիրիուն հունաստանի առաջադեմ կին գրողներից է։ Նա ծնվել է 1914 թվականին Թուրքիայի Այդին քաղաքում։ Սովետական ընթերցողներին նա հայտնի է «Մեռյալները սպասում են» վեպով, որը 1963 թվականին թարգմանաբար լույս տեսավ ռուսերեն։ Վեպը թարգմանվել է նաև այլ լեզուներով։ Մեծ հաջողություն է գտել նաև նրա երկրորդ վեպը՝ «Արյունաշաղախ հողերը»։

Այս թեման նա վերցրել է իրական կյանքից։ Ջնայած հունաստանում վերջերս հարյուրավոր քաղաքական բանտարկյալների ներումն շնորհվեց, սակայն միջնադարյան բանտերում մոտ քսան տարի է, ինչ իրենց երեխաների հետ տառապում են հունաստանի լավագույն զավակները։

Անցած տարի ամռանը Մոսկվայում ես հանդիպեցի Դ. Սոտիրիուին. մենք վաղեմի ծանոթներ ենք։ Նա որպես հունական պատգամավոր մասնակցում էր կանանց համաշխարհային կոնգրեսին։ Դ. Սոտիրիուն խոսում էր իր քրոջ՝ Էլլի Իոաննիդուի մասին, որը 1952 թվականի մարտ ամսին գնդակահարված Նիկոս Բելոյաննիսի կինն է։ Է. Իոաննիդուն ևս մահվան էր դատապարտվել, սակայն համաժողովրդական ճնշման տակ այդ պատիժը փոխարինվեց ցմահ բանտարկությամբ։ Գրողը պատմում էր, որ իր քրոջ աղջիկը՝ Էլլան, երբ առաջին անգամ դուրս բերվեց բանտից, ահ ու սարսափով էր նայում շենքերին, ավտոմեքենաներին։ Նա վախենում էր նույնիսկ լուսնից։ Այս պատմվածքի համար որպես նյութ հավանաբար ծառայել են հեղինակի քրոջ աղջկա հետ առնչված դեպքերը։

ԹԱՐԳՄԱՆԻՉ



# ԼՈՒՍՆԻՑ ՎԱԽԵՑՈՂ ՏՂԱՆ

ԴԻԴՈ ՍՈՏԻՐԻՈՒ

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Այդ տեղի ունեցավ մի քանի տարի առաջ, երբ մարդը դեռ չէր թռել տիեզերք։

Թոշակառու ուսուցիչ Գեորգիոս Սարիյաննիսի տանը հայտնվեց երեքամյա Վիկտորակին։ Ուսուցիչն ու նրա կինը՝ Էլենին, ընդամենը մեկ տարի էր, ինչ բնակություն էին հաստատել Աթենքի ծայրամասերից մեկում, և հարևանները դեռևս շատ քիչ բան գիտեին նրանց մասին։ Նրանք միայն լսել էին, որ Սարիյաննիսներն ունեցել են երեք որդի և երեքին էլ թաղել են։ Ոչ ոք չգիտեր, թե ինչպես և ինչու էր ընտանիքը կրել այդ ծանր կորուստները...

Ուսուցչի գլուխը լուսնի նման սպիտակ էր։ Նա հագնում էր սև կոստյում, որը նրա բարեկազմ ու ձգված մարմնին պատկառելի տեսք էր տալիս։ Էլենին լավ ընտանիքից դուրս եկած կնոջ, հիանալի տնտեսուհու տպավորություն էր թողնում։ Ամբողջ օրերով նա տարված էր լինում տնային հոգսերով։ Սակայն պատուհանների փակոցափեղկերը միշտ փակ էր պահում, որպեսզի արևը ներս չթափանցեր, հարևանների զրույցը չլսվեր։ Ծանր վիշտը Էլենիի վրա դրել էր իր կնիքը։ Նա մշտապես սև գլխաշոր էր կրում, ասես թե վախենում էր իր վշտից բաժանվելուց։

Երեքշաբթի և շաբաթ օրերին, լինեն ձյուն, անձրև թե խանձող շոգ, Գեորգիոս Սարիյաննիսն ու իր կինը կապոցներով և անպայման ծաղկեփնջերով ուղևորվում էին Աթենք։ Նրանք ո՞ւր էին գնում։ Ո՞ւմ մոտ։ Ավանում չարախոսում էին, ենթադրություններ անում, զարմանալով Սարիյաննիսների զաղտնապահության վրա, և այդ պատճառով, երբ ուսուցչի այգում հնչեց մանկական ծիծաղը, հարևանները զարմանքից ապշեցին։ Նրանք կանգնեցին ցանկապատի մոտ և ականջ դրին։

— Տե՛ր աստված, Սարիյաննիսների մոտ երեխա՞։

Անմիջապես բացվեցին տան դռներն ու լուսամուտները, և մինչ կողափոխեին սենյակները, հարևանները տեսան երեխային։



— Լավ երեխա է։
— Գուցե նրանց թոռն է։
— Ի՞նչ ես ասում։
— Համենայն դեպս, գաճաճ է՝ խելքը պապն է...

Առավոտները Վիկտորակին դուրս էր գալիս այգի և մեն-մենակ թափառում էր՝ ասես հմայված իր, համար հայտնաբերված նոր աշխարհով։ Նա նայում էր խոտերին ու ծառերին, պոկում ծաղիկներ, հոտ քաշում, ապա ամուր սեղմում ափի մեջ, կարծես դրանք գանձ լինեին։ Նա այգում փոսիկներ էր փորում, գետնից մանր քարեր հավաքում և այնպես անճարակ կերպով էր նետում, որ փողոցի երեխաները ծիծաղում էին։

— Հե՜յ, դու... այդքան մեծ ես, իսկ քար նետել չես կարողանո՞ւմ...

Հենց որ Վիկտորակին լսում էր երեխաների ծաղրուծանակը, ամբողջովին կծկվում էր և ծլկում տուն, չնայած ինքն այնքա՜ն կուզենար նրանց հետ խաղալ։ Քանի անգամ նա փորձել էր փողոց դուրս գալ, մոտեցել էր դռնակին, վախեցած հայացքով մի քանի անգամ նայել շուրջը, սակայն սիրտ չէր արել բացել։

Մի անգամ երեկոյան, Վիկտորակիի հայտնվելուց մոտավորապես մեկ ամիս հետո, Մարթա մորաքույրը, ինչպես ինքն է ասում, մեծ դժվարության առաջ էր կանգնել։ Նա ուզում էր մուրաբա եփել, սակայն չէր կարող հարմար աման գտնել։ Ի՞նչ անել։ Որոշեց Էլենիից փոխ առնել։ Մարթա մորաքույրը մոտեցավ նրանց տան լուսամուտին։ Էլենին երեխային ընթրիք էր տալիս և հետն էլ ոգևորված պատմում Կարմիր գլխարկի մասին հեքիաթը։ Հանկարծ երեխան ընդհատեց նրան.

— Տատի՛, դու էլ կարմիր գլխարկ դիր։ Ինչո՞ւ շարունակ սևով ես ման գալիս։— Հետո փոքրինչ մտածեց և լրջորեն ավելացրեց.— Կարմիրը ծիծաղում է, սևը՝ լալիս։— Եվ սկսեց նրա գլխի վրայից քաշել սև գլխաշորը։

Էլենին բռնեց նրա թաթիկները, համբուրեց և հորդորեց ուտել։ Նա չէր էլ մտածում գլխաշորից հրաժարվել, միայն թեթևակի ետ քաշեց։ Էլենիի դեմքը կարծես պայծառացավ, ասես թե վերջին ստվերը հեռացավ նրա ճակատից։ «Ուղղակի աչքիս առաջ ջահելացավ»,— մտածեց հարևանուհին և թխթխկացրեց։

— Ո՞վ է,— լսվեց Էլենիի ձայնը։

— Ես եմ։ Ներեցե՛ք, որ ժամանակին չեմ եկել...

— Ի՞նչ եք ասում, խնդրեմ, Մարթա մորաքույր,— տանտիրուհին վեր կացավ ընդառաջ գնալու։— Ես, տեսնում եք, երեխային եմ կերակրում։ Ժամանակն է, որ քնի, ես ու նա այսօր շատ երկար նստեցինք։

Էլենին հարևանուհուն մեկնեց ամենամեծ amanը, խորհուրդներ տվեց, թե ինչպես եփել մուրաբան և ճանապարհ դրեց մինչև դուռը։ Այդ պահին երեխան դուրս վազեց։ Սակայն հազիվ էր տնից դուրս եկել, երբ հանկարծ կուչ եկավ և սկսեց լաց լինել։

— Տատի՛, լույսը վառի՛, լույսը վառի՛, տատի՛,— վախեցած գոռաց նա։

Այդ ժամանակ Իմիտրոս լեռան հետևից երևաց լուսինը։ Կլոր, հստակ, նա գեղեցիկ կերպով լուսավորում էր աղքատիկ ավանը։ Վիկտորակին վախեցած թաքնվեց Էլենիի շրջազգեստի տակ, սկսեց դողալ, ավելի ուժգին լաց լինել։

— Ի՞նչ պատահեց, բալիկս։ Գուցե քեզ կծե՞ց,— անհանգստացավ հարևանուհին։

— Մի՛ անհանգստացեք,— աշխատելով թաքցնել իր դժգոհությունը, ասաց Էլենին։ Նա երե-

խային վերցրեց գիրկը, փայփայեց նրան, ջանալով հանգստացնել։

— Չի կարելի, ծիծեռնակս։ Ինչի՞ց վախեցար։ Լուսինը լա՜վն է։— Եվ դարձավ հարևանուհուն, որը զարմացած նայում էր իրենց.— Լուսնից է վախեցել։ Նա սովոր չէ։ Երբ առաջին անգամ լուսինը տեսավ...

Նա չվերջացրեց խոսքը, շտապ ցտեսություն ասաց ու երեխային տուն տարավ։

Մարթա մորաքույրը այդ արտասովոր նորության մասին պատմեց մյուս հարևանուհուն։

Հաջորդ օրը նրանք չհամբերեցին և հարցրին երեխային.

— Վիկտորակի՛, ո՞ւր է քո հայրիկը։

— Պապի՞կը։

— Ոչ թե պապիկը, այլ՝ հայրիկը... Քո հայրիկը։

Երեխան լայնորեն բացեց իր խոշոր աչքերը, կասկածամտորեն նայելով նրանց։

— Դու հայրիկ չունե՞ս։

— Հայ-րի՞կ։ Չգիտեմ, ճիշտը...

— Լսեք, թե ինչպես նա հիանալիորեն արտասանում է «ր»-ն,— ասաց հարևանուհիներից մեկը։ — Իմ տղան ավելի մեծ է, իսկ արտասանել չի կարողանում...

— Իսկ ո՞ւր է քո մայրիկը,— չէին հանգստանում կանայք։

Վիկտորակին նայեց շուրջը, և նրա հայացքը կանգ առավ երեք ոստիկանների վրա, որոնք գաճըր զրուցելով, ետ ու առաջ էին անում ոստիկանական տեղամասի առաջ, փողոցի անկյունում։

— Մայրիկը նրանց մոտ է,— ասաց երեխան, ցույց տալով ոստիկաններին։

Իրար աչքով անելով, հարևանուհիները լուռ հեռացան։

Հաջորդ օրը մի խումբ երեխաներ հավաքվեցին ուսուցչի տան մոտ, պատի տակ։ Նրանք զինված էին ճեղապարսատիկներով և դիտում էին Վիկտորակիին, որը այգում նստել էր աթոռին, իսկ նրա սիրելի փիսիկը՝ Ասպրուլիսը, վազվզում էր շուրջը։

— Հե՛յ, դո՛ւ, կաթնակե՛ր,— բղավեց ամենամեծը, որը ութ տարեկանից ավելի չէր լինի։ Ապա՜, մի ա՛յս կողմը նայիր։

Երեխաները ցանկապատի վրա բարձր պահել էին մի մեծ կտոր թուղթ, որն ամրացված էր տախտակին։ Թղթի վրա նկարված էր կլոր լուսին։ Երեխաները վանկ առ վանկ արտասանեցին.

— Վիկ-տո-րա-կի, Վիկ-տո-րա-կի։ Եթե դու զբոսանքի գնաս՝ լուսնից լավ բան չսպասես...

Վիկտորակին աչքերը բարձրացրեց, սիրտն ըսկըսեց թպրտալ։ Նա հասկացավ, որ իրեն վտանգ է սպառնում, և լուռ հեռացավ։



— Մեկ անգամ կկրակենք քո կատվի վրա և կսովորենք, թե ինչպե՜ս պետք է խփել նշանակետին,— բղավեց ավագը։

Առաջին քարը չկպավ։ Երեխաները նշան էին բռնում իրենց ճեղապարսատիկներով։ Կատուն ընկավ քարերի կարկուտի տակ։ Վիկտորակին առաջ նետվեց, որ պաշտպանի կատվին։ Քարերից մեկը դիպավ նրա դեմքին։

— Չի՛ կարելի, չի՛ կարելի։

Էլենին դուրս վազեց տանից, որպեսզի իմանա, թե ինչ է տեղի ունենում։ Փոքրիկ չարագործներն անհետացան։ Դողդոջուն ձեռքերով նա վերցրեց երեխային, սեղմեց կրծքին, զննեց վերքը. թեթև քերծվածք էր։ Նա լվաց վերքը, յոդ քսեց։ Իսկ ինչպե՞ս լվանալ, ջնջել երեխայի

վախը։ Ամբողջ օրը նա կծկված նստել էր անկյունում և այգի դուրս չէր գալիս, չէր նայում նույնիսկ լուսամուտից։ Նրան ամեն ինչի մասին պատմում էին, ջանում էին ուրախացնել և մխիթարել։ Երեկոյան Վիկտորակիի ջերմությունը բարձրացավ։ Ծերունիները կորցրեցին իրենց հանգիստը։ Ամբողջ գիշեր նրանք դուրս չէին գալիս երեխայի սենյակից։ Էլենին կշտամբեց երեխաներին, այդ կշտամբանքից բաժին հասավ նաև նրանց մայրերին։

— Նրանք են մեղավոր, նրանք։ Մարթան տեսավ, որ երեխան լուսնից վախենում է և...

Ուսուցիչը մտածկոտ լսում էր նրան.

— Էլենի, հարևանները մեղավոր չեն։ Մենք նրանց համար հանելուկ ենք։ Բացի այդ, լուսնի հետ կապված պատմությունը... մի՛ վշտանա։ Ես մեզ մոտ կբերեմ Ռինի մորաքրոջ որդուն։ Նա հանգիստ երեխա է և Վիկտորակիին խաղեր կսովորեցնի։

... Մի քանի շաբաթ հետո ուսուցչին կանչեցին ոստիկանական տեղամաս և մանրամասնորեն հարցաքննեցին երեխայի մասին։ Նպարավաճառի աներձագը, որ ծառայում էր ոստիկանությունում, ամբողջ ավանում տարածել էր նորությունը։ Վիկտորակին ծնվել է բանտում և այնտեղ ապրել երեք տարի։ Նրա հորը՝ ուսուցչի ավագ որդուն, գնդակահարել են քաղաքական գործով։ Իսկ երեխայի մայրը մինչև այժմ բանտում է։

— Խե՜ղճ Վիկտորակի,— հսկույն սկսեցին կարեկցել հարևանուհիները։ — Դրա համար էր նա վախենում լուսնից ու մթությունից։ Բանտում նրան փակում են երեկոյան ժամը հինգից հետո։

— Նրանց մոտ, բանտում,— պատմեց Էլենին,— բակը ջրհորի նման է, շուրջը՝ բարձր քարե պատեր։ Ինչպես է պատահել, մի անգամ բանտապահը բաց է արել խուցը, և մայրը, երեխան գրկին, գիշերով դուրս է եկել բակ։ Այն ժամանակ երեխան մեկ տարեկան էր և առաջին անգամ էր լինում բաց երկնքի տակ։ Ջրհորի անցքից վերև տեսել էր լուսինը, որն, ասես, հրեշի հսկա աչք լիներ։ Վիկտորակին վախեցել էր։ Այնուհետև ուղիղ երկու տարի նա լուսին չէր տեսել...

Ջատկի նախօրյակին հարևանուհիները հավաքվեցին Էլեֆտերիայի տանը։ Այդ գրագետ կնոջը նրանք խնդրեցին մի աղերսագիր կազմել մինիստրին՝ «Այսպիսի մեծ տոնին նորին ողորմածությունը թող բարեհաճի մորը վերադարձնել երեխայի մոտ»։ Գրեցին և ստորագրեցին բոլորը։ Նույնիսկ նպարավաճառը համաձայնեց իր անունը դնել խնդրագրի տակ։

Տոնն անցավ։ Գրեցին ևս մի նամակ։ Եվ հաջորդ տարում էլ գրեցին։ Մի տարի հետո կրկին գրեցին։ Ստորագրությունները գնալով ավելի ու ավելի էին շատանում։ Բայց ոչ մի արդյունք...

Վիկտորակին մեծացել է, շուտով կավարտի դպրոցը։ Նա արդեն գիշերից ու լուսնից չի վախենում։ Եվ դեռևս սպասում է իր մ․․րը։ Նա հաճախ իրեն հարց է տալիս. «Ե՞րբ է փոխվելու կյանքը...»

* * *

Ասում են, որ շուտով մարդը կթռչի Լուսին և այլ մոլորակներ։ Իսկ Երկրո՞ւմ։ Ի՞նչ է լինելու Երկրում։ Ի՞նչ է լինելու Հունաստանում։ Վիկտորակին հասակ է առնում, հուսով է նայում ապագային։ Նրա բանկոնի վրա կա կապույտ ժապավեն, որի վրա գրված է «114*»։

Բնագրից թարգմ. Հ. ՂԱԶԱՐՈՍՅԱՆ

---

* 114 — Հունական սահմանադրության այն հոդվածը, որտեղ խոսվում է քաղաքացիների իրավունքների մասին։





# ՁՆԵ ՄԱՐԴԸ

ՌԱՖԻԿ ԲԱՋԻԿՅԱՆ

Նորից ձյուն է, նորից ձյուն,
Եվ մանուկները նորից
Ձնե մարդ են պատրաստում
Ու հարցնում իրարից.

Կարե՛ն, Աշո՛տ, Արայի՛կ,
Ի՞նչ եք ուզում, որ դառնա
Ձնե մարդը մեր փոքրիկ,
Երբ որ մի օր մեծանա։

— Տանկիստ և կամ օդաչու,—
Ասաց Սեթը կովարար,
Իսկ Աշոտը՝ ո՛չ, ինչո՞ւ,
Լավ է դառնա նավավար։

Խելոք Արան շշնջաց.
Թող գիտնական նա դառնա,
Իսկ Կարենը քրքջաց.
Ինքդ էլ այդ չես ցանկանա...

Ես էլ կուզեմ, դառնա մեծ
Հերոս, չեմպիոն կրկնակի։ —
Ու աղմկում են անվերջ՝
Մանուկները մեր բակի։

Երբ որ գարունը բացվի,
Կյանքի գարունը նրանց,
Ամեն մեկն իր ուզածին
Հասնելու է անկասկած։

Ձնե մարդն էլ անգամ այս
Իզուր տեղը չի կորի,
Այլ գարնանը ջուր դարձած,
Մոտիկ ծառը կջրի։





# ԱԿՈՒՆՔԸ

ՎԼԱԴԻՄԻՐ ՄՈՎՍԻՍՅԱՆ

Այդ առավոտ Սիմոնն ասաց կնոջը.

— Թող գա, է՛լի, երեխա է, հանդ ու հողին կըծանոթանա։

Կինը չառարկեց։

Գարուն էր։ Բնությունը մայրական գրկի պես իրեն էր ձգում փոքրին ու մեծին։ Օրվա երգը հյուսվում էր թռչունների ծլվլոցից, գարնան հերկն անող տրակտորի հռնդոցից, գյուղամերձ անտառի խշշոցից։

Հայր ու որդի քայլում էին։ Կարող էին ավտոմեքենա նստել. կոլտնտեսության բեռնատարը, շրջկենտրոն գնալիս, անտառի մոտով էր անցնում։ Սակայն անտառը մոտիկ էր և հաճելի էր փափուկ կանաչի վրայով քայլելը։ Քայլում էին, և Արմենը իրար հետևից հարցեր էր տալիս.

— Էս ի՞նչ ծառ է, հայրիկ։

— Կաղամախի...

— Ծառի տակ ջրհոր կա, չէ՞...

Արմենը երեխաներից լսել էր, որ այդ հաստաբուն կաղամախու տակ ջրհոր կա և կանայք ջուրն այնտեղից են բերում։

— Էս ծիտն ի՞նչ ծիտ է...

— Դեղնափորիկ...

Անտառում ծառեր շատ էին, երգող թռչուններն էլ էին շատ։ Գարնանային այսպիսի համերգ առաջին անգամ էր լսում Արմենը։ Ճիշտ է, տնամերձ այգում էլ թռչուններ շատ են լինում, բայց անտառի երգն ուրիշ է։

Սիմոնը հենակներ էր կտրում, խաղողի վազի հենակներ։ Արմենը սկզբում տնտղում էր ծառերը, երգող թռչուններին, հետո սկսեց հենակ քարշ տալ մատղաշ թփերի արանքով։ Հիմա նա հարցեր չէր տալիս. գիտեր՝ հայրն աշխատում է և չի կարելի խանգարել։

Սիմոնը մերթ-մերթ որդուն զգուշացնում էր, որ հեռու չգնա, երբեմն էլ ջրով լիքը շիշն էր ուզում։

Արմենը կատարում էր հոր պահանջը և ամեն անգամ ջուր տանելիս մտածում էր, որ ինքն էլ է աշխատում։

Արմենը բավական վազվզել էր, և դեմքին քըրտինքի ցող էր իջել։ Նա չէր զգում, որ հոգնած է, բայց երբ հայրն ասաց, որ հիմա ճաշելու են, ուրախացավ։

Շշի ջուրն արդեն վերջացել էր, և Արմենը մտածում էր ջրի մասին։ Կոկորդը չորացել էր, առանց թրջելու ո՞նց հաց ուտեր։ Նա մի քանի անգամ ուզեց հորը հարցնել, թե ինչ պիտի անեն առանց ջրի, բայց չհամարձակվեց։ Վախենում էր, որ հայ-

րը մտքում բարկանա և այլևս իրեն հետը չվերցնի։ Բայց ծարավը շատ էր նեղում։

— Ես առանց ջրի մինչև երեկո կմնամ, հայրիկ,— հանկարծ ասաց նա։

Սիմոնը ժպտաց, որովհետև հասկացավ որդու ցանկությունը։

— Իսկ ես ծարավել եմ,— ասաց,— գնանք ջուր խմենք։

— Որտեղի՞ց...

— Մոտիկ ակնից։

— Ի՞նչ բան է ակնը, հայրիկ։

— Հողից բխող ջուրը ակն է, այսինքն՝ ակունք։

Արմենը փոքր-ինչ զարմացավ, որովհետև կաղամախու տակից էլ էր ջուր բխում, բայց մարդիկ ջրհոր էին ասում։ Նա այդ մասին երկար մտածեց և, այն է, ուզում էր հարցնել ջրհորի և ակնի տարբերության մասին, երբ հայրն ասաց.

— Ահա և հասանք։

Ուռենու տակ ջրականաչով երիզված մի փոքրիկ լճակ երևաց։ Արմենը իսկույն նկատեց, որ ջրի պղպջակները գորտի աչքերի պես վեր-վեր են թըռչում և միաձուլվելով՝ արծաթե հարթ մակերես դառնում։ Լճակի եզրերին ոչ մի քար չէր դրված և, առհասարակ, երևում էր, որ մարդկային ձեռքը չէր խառնվել բնության այդ հրաշալի ստեղծագործությանը։

Արմենն առաջին անգամ էր ակունք տեսնում և նրան թվում էր, թե գտել է մի հրաշալի բան, ուղղակի աշխարհի ամենահրաշալի բանը։ Նա այլևս չէր մտածում աղբյուրի և ջրհորի նույնության կամ տարբերության մասին։ Նա ջրհոր շատ էր տեսել և ահա տեսավ նաև ակունք։

— Ինչ լա՜վն է, հայրիկ,— ասաց Արմենն ու ավելի մոտեցավ ակունքին։

— Կամաց, կանաչը լպրծուն է, կսահես,— զգուշացրեց հայրը և շիշը գցեց ջրի մեջ։

Հաճելի կլկլոց լսվեց, և ջրի երեսի պղպջակները շատացան։

Շշից առաջինը Արմենը ջուր խմեց։ Նա չառարկեց, որովհետև հայրն ասել էր, որ ջուրը նախ փոքրինն է։

Ուռենու տակ, կանաչի վրա նստած հաճելի էր ճաշելը։ Արմենն առաջին անգամ էր անտառում ճաշում։ Հացն այնքան համեղ էր, ջուրն այնքան քաղցր։ Նա աչքի պոչով դեռ նայում էր լճակին, անվերջ խաղացող պղպջակներին։ Հայրը հանգըստացավ, բայց նա այնպես էլ չկշտացավ ակնից։

Մեկ-մեկ տատրակներ էին գալիս, զգուշորեն նայում շուրջը և գլուխները գցում լճակի մեջ։ Երկյուղած կտցարներ էլ էին երևում։ Բայց նրանք ոստոստում էին և կտուցները հազիվ ջրով թաթախած՝ ցատկում էին ծառերի մեջ, կորչում անտառում։

Արմենը հետո տեսավ ողնուն, որ այնպես զգուշորեն մոտեցավ ակնին և ջուր խմեց։ Ակնը շատ հետաքրքիր բան է, մտածեց տղան, մարդիկ, կենդանիները, թռչունները ջուր են խմում՝ միևնույն ակնից...

Սիմոնը վերսկսեց աշխատանքը, իսկ որդին մնաց ակնի մոտ։ Նա մոտիկ լանջից հողի գունդեր պոկեց և սկսեց նշան բռնել տատրակներին։ Իրար հետևից նետում էր, բայց հողի ոչ մի կտոր չէր կպչում թռչուններին։ Տատրակները թռչում էին և միայն ջրի շիթեր էին մնում նրանց թևերին։ Արմենը շատ տարվեց խաղով, շատ գունդեր նետեց դեպի ակնը։

Նա արդեն հոգնել էր և, երբ մոտեցավ ակնին, որպեսզի ձեռքերը լվա, տեսավ, որ ջուրը շատ է պղտորված։

Արմենը տխրեց, ինքն էլ պարզ չպատկերացնելով՝ ինչի համար։ Նա միայն ուզում էր, որ թըռ-



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

չունները ակնից ջուր խմեն։ Ինչո՞ւ նրանց զրկեց։

Արմենը տարված էր մտքերով, երբ մատղաշ կաղնիների արանքով ձգվող կածանով ակնին մոտեցավ մի մարդ։ Նա արագ էր քայլում։ Երևում էր, որ շատ էր ծարավ։ Ահա չոքեց ջրախոտերի վրա ու հանկարծ թքոտելով վեր կացավ.

— Բա մարդ էլ ջրի ակունքը կպղտորի՞...

Արմենը տապ արավ կանաչի մեջ։ Նա այնպես էլ չտեսավ. մարդը պղտոր ջրից խմե՞ց, թե՞ ծարավ շարունակեց ճանապարհը։ Նա չէր վախենում, թե հանկարծ մարդն իրեն կծեծի։ Ավելի շուտ ամաչում էր։ Ամոթի այդ զգացումը չլինե՛ր, նա դուրս կգար թաքստոցից և կասեր, որ ինքն է պղտորել. ներողություն կխնդրեր։



# ԵՐԿՆԱԳՈՒՅՆ ՀՈՒԼՈՒՆՔԸ

ՄԱՐԻԱ ԿՐՅՈՒԳԵՐ

## ԲԱՐԻ ԱՌՅՈՒԾՆԵՐԸ

Ավտոմեքենայի հետ կատարված արկածից ուշքի գալով՝ Պետրիկը ցավով նկատեց.

— Զուր տեղը այսքան ժամանակ կորցրինք. գնանք, գլխավոր մուտքը մյուս կողմից է:

Վերջապես նրանք կանգ առան գլխավոր մուտքի առաջ: Երկաթե ճաղա դարպասների երկու կողմում կանգնած էին երկու քարե առյուծ, իսկ ավելի ներս երևում էին մարմարե աստիճանները և փայլուն ապակեների մեջ ամփոփված ծաղկաթմբերը: Եվ հենց, այն է, արագ վազելուց շնչակտուր եղած Պետրիկը և Կարոլինկան ուզում էին սեղմել դարպասի տերևաձև բռնակը, երբ երկար բեղավոր դռնապանը շրխկացնելով պտտեց հսկայական բանալին: Դարպասը փակվեց:

— Ամեն ինչ կորավ: Էլ ներս մտնել չի լինի.— Կարոլինկան հուսահատված ձեռքերն իրար զարկեց:

Սրբելով իր անտեսանելի այտերի վրայով ցած սահող արցունքները՝ նա հենվեց դարպասի մոտ կանգնած քարե առյուծներից մեկին:

Հանկարծ աղջիկն զգաց, որ ձեռքին ինչ-որ տաք, խոնավ ու խավոտ բան դիպավ: Բաց անելով լացակումած աչքերը, Կարոլինկան զարմանքից ապշեց՝ տեսնելով, որ առյուծն այլևս քարից չէ և որ նա լիզում է իր ձեռքը: Կարոլինկան իսկի չվախեցավ: Առյուծը մեծ չէր և շատ բարի ու մեղմ տեսք ուներ:

Մինչ առյուծը բարեկամաբար, ինչպես ոչ ոքի, շան նման շարժում էր պոչը, մյուս առյուծը, որ կանգնած էր դարպասի այն կողմում, հառաչելով ձգվեց և մռնչաց.

Ա՜խ, ո՜նց եմ թմրել թաթերս:

— Էլ մի՛ ասա, — ձայն տվեց առաջին առյուծը, — հեշտ բան չի այսքան ժամանակ անշարժ մնալը:

— Իսկ ի՞նչ է, դուք... դո՞ւք էլ եք կախարդված:

— Իհա՛րկե, կախարդված ենք, — ձայն-ձայնի տվեցին առյուծները: — Մենք իսկապես կախարդված ենք, այնպես որ կարող եք մեզ վրա հույս դնել: Մենք ձեր մասին ամեն ինչ գիտենք, գիտենք նաև, որ ձեզ մոտ երկնագույն հուլունք կա:

— Իսկ դուք կօգնե՞ք մեզ քաղաքի Պրեզիդենտի մոտ գնալ:

— Էլ իզուր տեղը ժամանակ չկորցնենք, նստեցեք մեր մեջքին, գնանք Պրեզիդենտի մոտ:

Առյուծներից մեկը հանգիստ մոտեցավ դռանը և թաթով կամացուկ հրեց: Դուռն ինքն իրեն բացվեց:

— Իսկ դուք գիտե՞ք, թե Պրեզիդենտին գտնելու համար ո՛ր կողմը պետք է գնալ, — անհանգստացավ Պետրիկը: — Այստեղ այնքա՜ն միջանցքներ ու սենյակներ կան:

— Դե, ասացինք, որ մենք կախարդված ենք և ամեն ինչ գիտենք, — համբերությունից դուրս գալով՝ մռնչաց առյուծներից մեկը: — Մենք ամեն բան գիտենք: Բայց սո՛ւս կաց: Կարծես մարդ է գալիս: Մենք պետք է ձևանանք, թե քարից ենք:

Դռնապանը, թելի բամակներով ծանրաբեռնված սպունգը ձեռքին, արդեն մոտեցել էր նրանց: Դրա համար էլ առյուծները ստիպված եղան պառկել կարմիր գորգի վրա, ինչ-որ արմավենու տակ և անշարժանալ: Դռնապանը կանգ առավ և մի պահ նայեց գորգի վրա կուչ եկած քարե առյուծներին: Նրանց կեցվածքը այնքան զարմացրեց դռնապանին, որ նա սպունգը դրեց կլոր սեղանի վրա և ճակատը քորեց: Հետո ձեռքերը կանթեց և սկսեց ինքն իրեն խոսել. «Սա ի՞նչ է: Աչքի՞ս եմ երևում: Որքան հիշում եմ, այս դահլիճում երբեք քարե առյուծներ չեն եղել: Կամ գուցե տաքի՞ց է: Հո երազի մեջ չե՞մ»:

Նա կծմծեց ձեռքը, իսկ հետո վերջնականապես հանգստվելու համար, որ երազում չէ, ձեռքը դիպցրեց առյուծներից մեկին, ապա արագ վերցրեց սպունգը և դահլիճից դուրս վազեց: Մի րոպե անց, կարմիր ուղեգորգով ծածկված երկար միջանցքում լսվեցին առյուծների փափուկ ոտնաձայները: Ու երևի ճանապարհին ոչ մի արտասովոր բան չպատահեր, եթե հենց այդ պահին հանկարծ դռներից մեկը չբացվեր և միջանցք չմտներ մի ակնոցավոր հաստլիկ կին:

— Օգնեցե՜ք, — հանկարծ ճչաց նա: — Օգնեցե՜ք: Միջանցքում ինչ-որ գազաններ են վազում:

— Ի՞նչ գազաններ, — սկսեցին հարցուփորձ անել սենյակից դուրս թափված աշխատակիցները:

— Ես ի՞նչ գիտեմ ինչ գազաններ են: Գուցե շնե՞ր են կամ գուցե հսկայական կատունե՞ր, — սարսափահար իրենն էր պնդում հաստլիկ կինը: — Հարկավոր է ստուգել:

Սկիզբը՝ նախորդ համարում:



Եվ նա առաջ նետվեց, մյուսները՝ նրա հետևից: Միջանցքները շատ երկար էին, և վազելով բոլորը արդեն շնչակտուր էին լինում: Բայց այդպես էլ ոչ մի կենդանի չհայտնաբերեցին, բացի երկու բարի առյուծներից, որ անվրդով պառկած էին գորգերի մոտ:

— Ձեր աչքին է երևացել,— ձեռ էին առնում բոլորը հատուկ քարտուղարուհուն:

Հետապնդողներից խույս տալով՝ Կարոլինկան, Պետրիկը և առյուծները վերջապես հայտնվեցին մի ուրիշ միջանցքում ու կանգ առան կարմիր փարագույրով ծածկված դռան առաջ: Առյուծներից մեկը սեղմեց դռան բռնակը: Դռները հյուրընկալորեն բացվեցին:

— Մտե՛ք,— ասաց մեծ, փայլուն սեղանի մոտ նստած ինչ-որ մեկը:

## ՔԱՂԱՔԻ ՊՐԵԶԻԴԵՆՏԸ

Դրասեղանի մոտ նստած մարդը չէր երևում: Թերթը, որ նա կարդում էր, ծածկել էր նրա դեմքը:

Միգուցե հենց սա՞ է քաղաքի Պրեզիդենտը: Չէ՞,— շշուկով հարցրեց Կարոլինկան:

— Ի՞նչ իմանամ, երևի...

Այդ պահին դրասեղանի մոտ նստած մարդը շարժվեց և թերթը մի կողմ դրեց:

— Մենք կորա՜ծ ենք: Սա Ֆիլոմե՜նան է,— սարսափահար շշնջաց Կարոլինկան,— փախչե՛նք:

Բայց արդեն ուշ էր: Ֆիլոմենան նկատեց առյուծներին, որոնք առանց ժամանակ կորցնելու, նորից քար էին դարձել: Նա անմիջապես գլխի ընկավ, որ Պետրիկն ու Կարոլինկան էլ անպայման այդտեղ կլինեն: Չէ՞ որ միայն երկնագույն հուլունքը կարող էր կենդանացնել այդ քարակոփ առյուծներին: Իսկ եթե Կարոլինկան այստեղ է, ուրեմն երկնագույն հուլունքն էլ հեռու չէ: Ֆիլոմենան ցատկեց դրասեղանի վրայով և նետվեց դեպի առյուծները: Նրա սուր քիթը ավելի էր երկարել և արագիլի կտուցի պես կարմրել:

— Ա՜յ, ա՜յ,— ծղրտաց նա:— Որտե՞ղ է երկնագույն հուլունքը: Պատասխա՛ն տվեք, շո՛ւտ:

— Ի՞նչ երկնագույն հուլունք,— ձայն-ձայնի տված պատասխանեցին առյուծները:

Ֆիլոմենան առաջ ձգեց իր սրածայր քիթը և սկսեց հոտոտելով ու չորս կողմն աչք ածելով՝ ման գալ սենյակում: Այ քեզ դժբախտությո՜ւն. հուլունքը երևում էր: Թեև տուփի մեջ էր դրված, իսկ տուփն էլ Կարոլինկայի գրպանում էր:

Նա թույլ երկնագույն լույս էր արձակում և դրանով մատնում Կարոլինկային:

— Ահա՛,— հուլունքը նկատելով ճչաց Ֆիլոմենան:— Ահա՛ թե որտեղ ես դու:

— Փախչե՛նք,— շշնջաց Կարոլինկան սարսափահար:

Բայց ո՞ւր փախչել: Դուրս փախչել չի լինի. անպայման կհանդիպեն քիչ առաջ իրենց հետապնդող մարդկանց: Իսկ Ֆիլոմենան, չգիտես որտեղից, մի հովանոց գտավ և հարձակվեց խեղճ առյուծների վրա: Նրանք, ճիշտ է, Ֆիլոմենային վախեցնելու համար ինչքան որ հնարավոր էր, ահեղորեն մռնչացին, բայց Ֆիլոմենային վախեցնելը այնքան էլ հեշտ բան չէր: Նա կատաղած առյուծների վրա նետվեց և, հարմար պահ գտնելով, հովանոցով այնպես հարվածեց նրանցից մեկի մռութին, որ արյուն եկավ:

— Ահա՛,— գոռում էր նա,— իմ ձեռքից էլ չե՜ք պրծնի: Ես կխլե՜մ երկնագույն հուլունքը:

Առյուծները, որքան ուժ ունեին, վազում էին, Պետրիկն ու Կարոլինկան կառչել էին նրանց թավ բաշերից: Իսկ Ֆիլոմենան շնչասպառ ընկել էր նրանց հետևից՝ աչքը հուլունքից չկտրելով:

Հանկարծ սենյակ մտավ շատ հաճելի արտաքինով մի տարեց մարդ:

Բարեբախտաբար առյուծները Ֆիլոմենայից շուտ նկատեցին նրան և իսկույն քարացան:

— Ի՞նչ է կատարվում այստեղ,— զարմացած հարցրեց տարեց մարդը:— Ձեզ ի՞նչ է պատահել, Ֆիլոմե՛նա: Ինչո՞ւ եք սեղանի շուրջը պտտվում: Մի՞թե դա վայել է իմ քարտուղարուհուն:

Ֆիլոմենան հազիվ թափ կտրելով՝ կանգ առավ և իսկույն դարձավ քաղաքավարի ու սիրալիր: Նույնիսկ քիթը առաջվա պես երկար ու սուր չէր, իսկ ձեռքին, հովանոցի փոխարեն մի մատիտ կար: Նա սկսեց քաղցր խոսել.

— Ես լսում եմ ձեզ, պա՛ն Պրեզիդենտ: Ես ուզում էի...

— Շնորհակալ եմ, դուք հիմա ինձ հարկավոր չեք, կարող եք գնալ,— ընդհատեց նրան տարեց մարդը:— Եվ խնդրում եմ ինձ չխանգարել, որովհետև շատ կարևոր գործ ունեմ:

— Շատ լավ, պա՛ն Պրեզիդենտ, — պատասխանեց Ֆիրմենտան և այնպես խոնարհվեց, որ քիչ էր մնում սուր քիթը դիպչեր կարմիր գորգին: Նա մի անգամ էլ չարությամբ նայեց առանձնասենյակի կիսախավարում առկայծող երկնագույն ճոյուների կողմը և բռունցքով սպառնաց բարի առյուծներին: Վերջապես նա դժկամությամբ դուրս եկավ ու դուռը ծածկեց:

Բարեբի Պրեզիդենտը շուռ եկավ դեպի իր գրասեղանը և հանկարծ, նկատելով պատի տակ նստած երկու բարի առյուծներին, զարմանքից մնաց սառած:

— Սա՞ ինչ է, — զարմացած ասաց նա, — որքան ես հիշում եմ, այստեղ երբեք առյուծներ չեն եղել:

— Շատ բնական է, որ առաջ չեն եղել, — շատ սիրալիր բացատրեց նրան ինչ-որ մեկի բարակ ձայնը, — որովհետև դրանք մեր առյուծներն են, պա՛ն Պրեզիդենտ: Նրանք ոչ ոքի վնաս չեն տալիս և ինչպես տեսնում եք, շատ փոքր են:

— Ո՞ւմն են այս առյուծները:

— Մերն են:

— Ինչպե՞ս թե «մերն են», — զարմացավ Պրե-



զիդենտը, — և ընդհանրապես այդ ո՞վ է համարձակվել մտնել իմ աշխատասենյակը:

— Մենք... Կարոլինկան և Պետրիկը: Ծաղիկների փողոցից:

Պրեզիդենտը մի փոքր շփոթված չորս կողմը նայեց:

— Դուք մեզ չեք տեսնի, որովհետև մենք անտեսանելի ենք:

— Անտեսանելի՞ եք, — ցնցվեց Պրեզիդենտը: — Անտեսանելի՞, — կրկնեց նա անվստահ, բայց արդեն մի փոքր հիացմունքով:

— Այո՛, դուք հիմա կարող եք համոզվել: Ուզո՞ւմ եք:

— Այո՛, — շատ սիրալիր համաձայնեց Պրեզիդենտը:

— Ուշադրությո՛ւն. մե՜կ, երկո՜ւ, երե՜ք, — լսվեց հրամանը:

Եվ հենց նույն պահին, ի զարմանս Պրեզիդենտի, որ պատրաստվում էր գլանակը վառել, սեղանից վեր բարձրացավ լուցկու տուփը, հետո տուփից ինքն իրեն լուցկու մի հատ դուրս եկավ, քսվեց լուցկու կողին և բռնկվելով մոտեցավ ծխախոտին:

Հանկարծ Պրեզիդենտն ինչ-որ *փսփսոց լսեց.

— Պետրի՛կ, մի՞թե չգիտես, որ լուցկու հետ չի կարելի խաղալ:

— Քեզ երեխայի նման մի՛ պահիր, — լսվեց նույնպիսի շշուկով պատասխանը: — Տեսնում ես, որ կարևոր բան է վճռվում

— Ոչինչ չեմ հասկանում, — ասաց Պրեզիդենտը ծուխը քթանցքերից դուրս թողնելով: — Իսկ չի՞ կարելի այնպես անել, որ ես տեսնեմ ձեզ: Գոնե մի րոպեով: Ճիշտն ասած, չեմ սիրում մարդկանց հետ խոսել, երբ նրանց չեմ տեսնում:

Պրեզիդենտը դեռ խոսքը չէր ավարտել, երբ Կարոլինկային ու Պետրիկին տեսավ իր առաջ կանգնած:

— Այսպե՜ս, այսպե՜ս, ուրեմն այդ դուք էիք, որ քիչ առաջ անտեսանելի էիք:

— Այո՛, պա՛ն Պրեզիդենտ, — գլխով արեց Կարոլինկան՝ քաղաքավարությամբ խոնարհվելով, իսկ Պետրիկը հարգանքով կրունկները իրար զարկեց:

— Այդպե՜ս: Բայց ինչո՞ւ էիք անտեսանելի դարձել:

— Դե, որովհետև այլ կերպ չէինք կարող ձեզ մոտ մտնել: Մենք շատ կարևոր գործով ենք եկել, — պատասխանեց Պետրիկը:

— Եվ շատ շտապ, — ավելացրեց Կարոլինկան:

— Եվ բացի այդ, եթե մենք տեսանելի լինեինք, Ֆիրմենտան մեզ կբռներ:

— Իսկ դուք ի՞նչ գործ ունեք Ֆիրմենտայի հետ: Ճիշտ է, նա այնքան էլ համակրելի կին չէ, բայց լավ քարտուղար է:

— Նա կախարդ է, — հայտարարեց Պետրիկը:

— Ի՞նչ ես ասում, — նորից զարմացավ Պրեզիդենտը: — Հնարավոր է, հնարավոր է: Որքան հիշում եմ, ինչ-որ մեկն ինձ արդեն նախազգուշացրել է: Դե, հիմա ասեք, թե ինչո՞ւ եք եկել ինձ մոտ:

— Պա՛ն Պրեզիդենտ, — ասաց Կարոլինկան, — նախ թույլ տվեք հյուրասիրել ձեզ: Ագատա մորաքույրը համեղ մեղրաբլիթներ է պատրաստել:

Եվ նա իսկույն գրպանից հանեց նախաճաշի փաթեթը,* իսկ փաթեթում, ինչպես գիտեք, մեզ ծանոթ մեղրաբլիթներից էլ կային:

(Շարունակելի)





# ՄԱՐԴ, ՈՐԻՆ ՉԿԱՐՈՂԱՑԱՆ ԶԻՆՎՈՐԱԳՐԵԼ

ՄԱՅՔ ԿՈՒԻՆ
(Ամերիկյան գրող)

Ծեր նավաստին տեղից-տեղ տեղափոխեց ծխամորճը և թքեց արհամարհանքով:

— Պատերազմ,— ասաց նա:— Ոչ դժվար է, ոչ էլ բարդ՝ հասկանալու համար՝ վերցրու հրացանը և սպանիր մարդկանց: Բայց իմ պապը շատ հնարամիտ էր և վարվեց մեծ խելամտությամբ:

Երեխաները նստած էին հանգիստ, մինչդեռ նա փնչացրեց և աչքերը հառեց դեպի ծովը: Նրանք հասկացան, որ նավաստին շուտով շարունակելու է:

— Դա Անկախության պատերազմի ժամանակներում էր,— ասաց նա,— ձեր ծնվելուց դեռ շատ առաջ: Իմ պապը, գեղեցիկ մի երիտասարդ, շատերի հետ միասին զինակոչված էր: Բժիշկը ստուգեց նրա կոկորդը, ամուր խփեց կրծքին և հայտարարեց, որ ամենալավ հետևակային զինվորն է: Նրան լողացրին, համազգեստ հագցրին, հրացան տվեցին և ասացին.

— Հիմա դու պատրաստ ես:

— Պատրաստ եմ ինչի՞ համար,— ասաց իմ պապը:

— Ինչի՞... պատրաստ ես գնալու և կրակելու,— ասացին նրանք:

— Իսկ ու՞մ վրա պետք է ես կրակեմ,— ուզում է իմանալ իմ պապը:

— Թշնամու, իհարկե,— պատասխանում են նրանք:

— Իսկ ո՞վ է իմ թշնամին:

Եվ փակուղու մեջ է դնում մարդկանց:

— Եթե անհրաժեշտ է կրակել, ես կարծում եմ կկրակեմ: Բայց ո՞վ է նա, ի՞նչ է նրա անունը, ամուսնացա՞ծ է, թե՞ միայնակ, ունի՞ երեխաներ, ի՞նչ մասնագետ է, քանի՞ տարեկան է: Ես բոլորովին դեմ չեմ կրակելու, բայց դուք չեք կարող ինձ ստիպել սպանել մի մարդու, որը բոլորովին անծանոթ է ինձ:

Դա շատ տրամաբանական էր, և հրամանատարները չկարողացան ժխտել: Նրանց մնում էր գնալ և թշնամու զոկատի անձնական գործերի միջից ընտրել մեկին, որպեսզի իմ պապը կրակի նրա վրա:

— Ահա,— ասացին նրանք,— այս մարդը հարմար է, ինչպես և մյուսները: Այստեղ կա լրիվ տեղեկություն, ինչպես նաև լուսանկարը: Տարեք տուն և ուշադրությամբ կարդացե՛ք: Երբ դուք նրան լավ ծանոթանաք, կգաք և մենք ձեզ կուղարկենք ճակատ՝ նրան սպանելու:

Հենց հաջորդ օրը իմ պապը վերադարձավ.

— Այս մարդը հարմար չէ,— ասաց նա,— ես չեմ կարող սպանել նրան: Ես երբեք չեմ ճանաչել այսպիսի հրաշալի մարդու: Ես նրան սիրեցի ինչպես եղբորս: Նրա անունը Օլիվեր Ծմալց է: Նա աշխատում է հեծանիվների վերանորոգման արհեստանոցում: Ունի կին և երեք փոքրիկ երեխաներ: Պարապ ժամերին նվագում է ջութակ և երգում է «Կոկոնները, սիրելիս, բացվում, ժպտում են նորից»: Սա իմ ամենասիրած երգն է, այսպես են երգում՝

*Կոկոնները, սիրելիս, բացվում, ժպտում են նորից,*
*Արցունքները սրբիր, շատ, քո բոցկլտուն աչքերից,*
*Ժպտա՛, ժպտա՛, սիրելիս, ժպտա՛ ու ինձ համբուրի՛ր,*
*Քանի դեռ չեմ հեռացել, չեմ գնացել դեռ հեռու:*
*Ժպտա՛, ժպտա՛, սիրելիս, ժպտա՛ ու ինձ համբուրի՛ր,*
*Ա՛խ, ես գնում եմ, գնում, գնում եմ ես մեռնելու:*

— Բավական է,— ասաց գեներալը,— արդեն պարզ է, թե որքան ընկճված մարդ է նա, ես հասկանում եմ, թե դու ինչ ես զգում և ես քեզ չեմ մեղադրում: Մենք կհանձնարարենք, որ ուրիշը նրան սպանի:





Հետո գեներալը գնաց և երկար ժամանակ կորցրեց թշնամու զինվորների բնութագրերն ուսումնասիրելու վրա: Վերջապես ընտրեց մեկին, որը հարմար էր թվում:

— Ահա,— ասաց նա իմ պապին,— բոլորն էլ ուրախ կլինեին սրան սպանելու համար: Գնա՛ տուն և ուսումնասիրի՛ր այս գործը, երբ դու բավականաչափ կծանոթանաս նրա հետ, ե՛կ և առանց ուշացնելու սպանի՛ր նրան:

Իմ պապը տարավ գործը տուն և երկար ու համառորեն ուսումնասիրեց այն: Այս մարդը իսկապես արգահատելի անձնավորություն էր: Նրա անունը Օսկար Ֆինկլ էր: Նա իր օրը անց էր կացնում գինետներում՝ զբաղվելով հարբեցողությամբ, իսկ երեկոները՝ կնոջը ծեծելով: Նա պահպանում էր իր գոյությունը կույրերի գլխարկների միջից կոպեկներ փախցնելով: Նա ստոր էր, դյուրագրգիռ, ծույլ, անհամեստ, կոպիտ, փնթի և անպարտաճանաչ:

Մինչև ուշ գիշեր իմ պապը ուսումնասիրեց գործը և հաջորդ առավոտյան վերադարձավ գեներալի մոտ:

— Այս մարդը անկասկած մի պորտաբույծ է,— ասաց իմ պապը,— ճիշտն ասած՝ ես ոչ մի պատճառ չեմ գտնում նրան չսպանելու: Նա ամենաանարժան սրիկաներից մեկն է, որի նմանը երբեք չի եղել:

— Շատ գեղեցիկ,— ասաց գեներալը,— ահա՛ քո հրացանը, դու կարող ես գնալ ճակատ և անմիջապես սպանել նրան:

— Մի րոպե,— ասաց իմ պապը,— նա նիսկ ամենաստոր պորտաբույծն էլ կարող է ապրել կանոնավոր: Ահա մի անձնական սրտաբաց նամակ, որ ես գրել եմ նրան: Ես որոշել եմ նրան ևս մի հնարավորություն տալ: Ես նրան պետք է վեց ամիս ժամանակ տամ, որ նա իրեն հավաքի և վերափոխվի: Եթե մինչև այդ նա չվերափոխվի, ես տեղն ու տեղը կսպանեմ այդ շանը:

Բնական է, դա շատ գեղեցիկ առաջարկություն էր և հրամանատարը չկարողացավ չհամաձայնել: Այնպես որ իմ պապը գնաց տուն սպասելու:

Ծեր նավաստին կանգ առավ և ավելորդ շարժումներ կատարելով՝ սկսեց փնչացնել ծխամորճը: Երբ պարզ դարձավ, որ նա այլևս չի շարունակելու, մի փոքրիկ աղջիկ հարցրեց.

— Հետո այդ վատ մարդը վերափոխվե՞ց, թե՞ ոչ:

— Նա վերափոխվող պտուղը չէր,— ասաց ծեր նավաստին,— երկու ամսից հետո նա հարբած, անզգա վիճակում ընկավ աստիճաններից և ջարդեց իր գլուխը: Այդ էլ եղավ նրա վերջը:

— Իսկ ձեր պապիկը,— հարցրեց փոքրիկ մի տղա,— ի՞նչ արեց այդ ժամանակ:

— Ի՞նչ կարող էր նա անել,— ասաց ծեր նավաստին:— Մարդը մեռած էր, իսկ մեռած մարդուն չեն կարող սպանել: Նրանց մնում էր ոչ այլ ինչ, եթե ոչ՝ ազատել իմ պապին պատերազմից:

*Անգլերենից թարգմ.*
*ԼՅՈՒՍՅԱ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*

*Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ*



## ԵԹԵ ԴՈՒ ՋՈԿԱՏԱՎԱՐ ԵՍ՝ ԳԻՏՑԻ՛Ր...

Կոմերիտական կազմակերպությունը քեզ վստահել է խիստ կարևոր և պատասխանատու գործ։ Դու համարվում ես պիոներական ջոկատի ավագ բարեկամը, ղեկավարն ու խորհրդատուն՝ ՋՈԿԱՏԱՎԱՐԸ։

Ջոկատում քեզ սպասում են ամենատարբեր բնավորության տեր՝ մեղմ ու կամակոր, անհանգիստ ու հարցասեր, հարյուրավոր «ինչու»-ներով, բայց առաջին հայացքից գուցե և անտարբեր երեխաներ։

Թող այդ բոլորը քեզ չթվա բարդ ու արտասովոր։ Պիոներներին անկեղծորեն հետաքրքրում է, թե ինչպիսի՞ն ես դու՝ իրենց ջոկատավարը, քո գալով ի՞նչ կփոխվի ջոկատի կյանքում։ Գուցե սկզբում դու այնքան էլ հստակ չես պատկերացնում քո պարտականությունները կամ գուցե չգիտես, թե ինչից սկսել։ Բայց մի՛ հուսահատվիր. քեզ կօգնեն և՛ ավագ ջոկատավարը, և՛ ուսուցիչները և՛, իհարկե, այն կոմերիտական կազմակերպությունը, որը գործուղել է քեզ դեպի պիոներական ջոկատ։

### ԻՆՉԻ՞Ց ՍԿՍԵԼ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՋՈԿԱՏՈՒՄ

Անցնելով ջոկատում աշխատանքի, հիշի՛ր, որ ջոկատային ջոկատավարից է կախված երեխաների ինքնագործունեության ու նախաձեռնության զարգացման գործը և կապվածությունը ջոկատին։

Մինչև ջոկատ մտնելը ծանոթացի՛ր պիոներների ցուցակին, նրանց տարիքի և պիոներական շարքերը ընդունվելու ժամանակի հետ։ Պարզի՛ր, թե ջոկատում քանի օղակ կա, ովքեր են օղակավարները, ովքեր են մտնում ջոկատի խորհրդի կազմի մեջ, ջոկատում կա՞ն դրուժինայի խորհրդի անդամներ։

Զրուցի՛ր ավագ ջոկատավարի հետ այն մասին, թե ինչպիսի տեղ է գրավում քո ջոկատը դրուժինայում, ինչպիսի առաջադրանքներ է առաջիկայում տալու դրուժինայի խորհուրդը նրան։

Հետաքրքրվի՛ր դասղեկից, թե ինչպես են պիոներները պատրաստում դասերը, ինչպես են մասնակցում դպրոցի ընդհանուր աշխատանքներին։ Խնդրիր դասղեկին տալ ջոկատի, առանձին պիոներների փոխադարձ հարաբերության բնութագիրը՝ նշելով առանձնապես ակտիվ պիոներներին։

Ջոկատի հետ ծանոթանալու կարգը կարող է տարբեր լինել, բայց ջոկատային ջոկատավարի աշխատանքի սկիզբը անպայմանորեն պահանջում է նախ ծանոթանալ պիոներական ակտիվի, օղակների և ապա ջոկատի մյուս պիոներների հետ։

Բարեխղճորեն նախապատրաստվի՛ր պիոներների հետ քո առաջին հանդիպմանը։ Դրա նպատակը պետք է լինի գործնական և բարեկամական հարաբերություններ հաստատել պիոներների հետ, տպավորություն ստեղծել նրանց մոտ այն մասին, որ ջոկատավարը շահագրգռված է ջոկատի կյանքով, որ նա ունակ, ձեռներեց կազմակերպիչ է։

Դրա համար ծանոթացումը ամբողջ ջոկատի հետ պետք է սկսել այնպիսի զբաղմունքից, որին դու լավ ես տիրապետում։ Եթե դու լավագույն սպորտսմեն ես, առաջարկիր սպորտային մի խաղ, եթե նվագում ես երաժշտական որևէ գործիք, առաջարկիր երգել սիրած երգերը. կարելի է հետաքրքիր վիկտորինաներ, շախմատի և շաշկու մրցություն կազմակերպել։ Քո մասին պատմիր կարճ, ի՞նչ է անունդ, որտե՞ղ ես սովորում կամ աշխատում։ Լավագույն դեպքում թող քեզ ներկայացնի դպրոցի դիրեկտորը, ավագ ջոկատավարը կամ ուսմասվարը։

Առաջարկի՛ր ջոկատի պիոներական ակտիվին պատմել յուրաքանչյուր օղակի աշխատանքների



## ՈՒՐ ԳՆԱՄ

*ՄՆԱՑԱԿԱՆ ԹԱՐՅԱՆ*

Լույսը բացվեց,
Ո՞ւր գնամ,
Լավ է տատիս
Հյուր գնամ։

Կուրախանա
Տատիկս,
Կասի.— Ապրի՛
Թոռնիկս։

Եկավ իմ ջուր
Բերողը,
Եկավ իմ փայտ
Կրողը,
Եկավ ասեղ
Թելողը,
Որդուս նամակ
Գրողը։

Լույսը բացվեց,
Շուտ գնամ,
Թե չէ գործից
Կուշանամ։

---

մասին, արտահայտվել քննադատական դիտողություններով և առաջարկություններով հետագա պլանների շուրջը։

Անպատճառ ի՛նքդ առաջարկիր հետաքրքիր մի գործ, ջոկատի հավաքույթ, արշավ, հանրօգուտ աշխատանք կամ մի որևէ բան։

Քո ջոկատային բոլոր գործերում եղի՛ր նախաձեռնող, հնարագետ և հետևողական։ Ձգտի՛ր ա՛յն բանին, որ քո ջոկատը դպրոցում լինի լավագույնը։

ՀԵՆՐԻ ԲԱԴԱԼՅԱՆ

Նկ. ՎԱՆԻԿ ՆԱԺՈՅԱՆԻ



## 12 ՏԱՐԵԿԱՆ ՌՈԲԻՆԶՈՆԸ

Աչարացի փոքրիկ Ալյոշան այս տարի ամռանը մոլորվել էր լեռներում և 22 օր ապրել մեն-մենակ։ Ահա թե նա ինչ պատմեց այդ մասին ժուռնալիստ Յու. Զվյագինին։

*Այդ օրը ես վաղ արթնացա։ Լույս էր, բայց արևը դեռ թաքնված էր լեռների հետևում։ Հայրիկս պահարանից բերեց պանիր, եգիպտացորենից պատրաստված բլիթներ, խնամքով դրեց թղթե տոպրակի մեջ։ Այդ բոլորը պետք է տանեի մայրիկին։ Արդեն մի քանի օր էր, ինչ նա ապրում էր բարձրադիր արոտավայրում։*

*... Ես քայլում էի լեռնային արահետով. շուրջս աղմկում էր անտառը, երգում էին թռչունները։ Ճանապարհը ես լավ գիտեի, ամառ եղբայրներիս հետ շատ անգամ էի գնացել այնտեղ՝ 20 կիլոմետր այն կողմ։ Իսկ մի անգամ էլ այդ ճանապարհը անցել էի մենակ։ Ինչի՞ց վախենայի։*

*Գյուղից մի քանի կիլոմետր հեռու հանդիպեցի մեր համագյուղացի Իսկանդար Դատունաշվիլուն։ Նա ոչխարի հոտ արոտավայր էր քշում։ Իսկանդարն ասաց. «Սարքիսյա լեռան մոտ սպասիր ինձ, միասին գնանք»։ Իսկ ես սպասել չէի ուզում. «Ի՞նչ է, ինքս չգիտե՞մ ճանապարհը»։*

*Անտառից դուրս եկա։ Արահետը դարձավ համարյա անտեսանելի և շուտով բոլորովին կորավ բարձր, խիտ խոտերի մեջ։ Իմ հաշիվներով, մինչև արոտավայրը, մնացել էր ընդամենը երկու կամ երեք կիլոմետր։ Որոշեցի ուղիղ գնալ, որ չմոլորվեմ։ Հանկարծ անձրև տեղաց։ Ես ամբողջովին թրջվեցի և սկսեցի դանդաղ առաջ գնալ։ Առջևում երևաց ինչ-որ մութ բան։ Հարյուր քայլ անցա և նորից հայտնվեցի անտառի մեջ։*

*Սա ի՞նչ է, մի՞թե մոլորվել եմ։ Հարկավոր էր փնտրել արահետը... Երկար քայլելուց հոգնել էի արդեն։ Հանդիպեցի փոքրիկ մի աղբյուրի։ Նստեցի քարին, բլիթ ու պանիր կերա, հանգստացա և նորից շարունակեցի քայլել։ Արդեն մթնել էր, իսկ անձրևը թափվում էր ու թափվում։ Վախենում էի։ Ես գտա մի մեծ ծառ, նրա մոտ հավաքեցի տերևներ, անկողին պատրաստեցի։ Բայց քնել չկարողացա։ Այդպես էլ թավալվեցի մի կողքից մյուսը մինչև առավոտ։ Ցրտից ու խոնավությունից ատամ-ատամի էի խփում։*

Հենց այդ երեկոյան էլ Իսկանդար Դատունաշվիլին բարձրացավ արոտավայր և Ալյոշայի մորը



Նկ. ՍԵՅՐԱՆ ԽԱԹԼԱՄԱՋՅԱՆԻ

պատմեց տղայի նոր հանդիպելու մասին: Մայրը անհանգստացավ: Խարույկներ վառեցին, սկսեցին բղավել: Բայց Ալյոշան չէր արձագանքում:

Երկրորդ օրը: *Մի քիչ լուսացավ, ես վեր կացա և շարունակեցի գնալ: Նորից լեռներ ու անտառ: Մի տեղ գլորվեցի ժայռից և վնասեցի կողս: Ցավում էր: Բայց ամենասարսափելին այն էր, որ ընկա, կորցրի պանիրն ու բլիթները: Արահետը գտնելու հույս չունեի այլևս: Ուզում էի միայն գտնել գետը և ափով հասնել մի որևէ գյուղ: Ես գիտեի, որ գյուղերը միշտ գտնվում են ջրի մոտ:*

*Այնպես ուտե՜լ էի ուզում: Իսկ մութը, պատահում էր, ննջում էի, հրավիրվում սեղանի մոտ նստել: Մայրիկը միշտ համեղ ճաշեր է պատրաստում... Հանկարծ տեսա ինչ-որ հատապտուղներ, հավամրգու թուփ: Մի քիչ հավաքեցի, կերա: Դարձյալ մթնեց: Եվ նորից չկարողացա քնել:*

Երկրորդ օրվա առավոտյան մայրը սարից իջավ գյուղ, չգտավ տղային և տագնապ բարձրացրեց: Գյուղի տղամարդիկ դուրս եկան նրան որոնելու: Քայլ առ քայլ մանրակրկիտ ստուգեցին լեռների և անտառի շրջակայքը: Բղավեցին, խարույկներ վառեցին: Ալյոշան չկար:

Հինգերորդ օրը: *Արդեն սարսափելի չէր, ընտելացել էի: Ժայռեր ու անտառ, անտառ ու ժայռեր... Գիտեի, որ պտտվում եմ միևնույն տեղում, ու մի կերպ չեմ կարողանում առաջ գնալ: Որտե՞ղ եմ ընկել: Գիշերը ժայռերի մեջ մի փոս գտա, որտեղ այնքան էլ խոնավ չէր: Մտա այնտեղ ու ննջեցի: Հիշեցի, թե հայրս ինչպես էր պատմում բարի ավազակ Արսենի մասին, որը հարձակվում էր միայն հարուստների վրա և նրանց ամբողջ ունեցվածքը տալիս գյուղացիներին: Ես էլ էի այդպես թափառում լեռներում: Իսկ հետո հիշեցի Գագարինին և Տիտովին: Նրանք նույնպես մենակ էին տիեզերքում:*

Տասնհինգերորդ օրը: *Առավոտյան ներքևում մի գետակ տեսա: Ուզեցի իջնել ջուր խմելու, բայց ոտքերս առաջ չէին գնում: Չէին գնում և վերջ: Վերնաշապիկս ու շալվարս ամբողջովին պատառոտվել էին: Ոտքերս, կողքերս, ձեռքերս քերծվել էին և ճանկռվել, ամեն էլ արյուն էր հոսում:*

Տասնյոթերորդ օրը: *Լուսաբացին կրակ տեսա, գետափին խարույկ և մարդիկ էին երևում: Նրանք շատ մոտ էին, բայց ձայն հանել չէի կարողանում: Պառկել և նայում էի, նրանք գնացին...*

*Ճանճերը և ամեն տեսակի միջատները մտնում էին արյունոտված վերքերիս մեջ: Վիրավորված տեղերը փակեցի վերնաշապիկիս կտորներով, բայց այդ էլ չօգնեց:*

Քսաներորդ օրը: *Արթնացա, տեսնեմ՝ կողքիս մի արջ կա: Սաստիկ վախեցա: Փակեցի աչքերս, մտածում եմ՝ ինչ ուզում է թող լինի: Հոտոտեց ինձ, ապա թաթերով փորեց հողը, ցիրուցան արեց քարերը և պառկեց կողքիս: Երեք ժամ այդպես պառկեցինք կողք-կողքի: Հետո նա տեղից վեր կացավ և գնաց, նույնիսկ ետ էլ չնայեց: Ես նայեցի երկնքին: Իմ առջև, շատ ցածր, ճախրում էին արծիվները:*

Այդ օրն էլ միլիցիայի աշխատակից Օսման Դավիթաձեն, որը շատ լավ գիտեր լեռները, կազմակերպեց հետախուզական մի նոր խումբ: Այդ խմբի մեջ մտավ նաև Ալյոշայի եղբայրը՝ Հասանը:

Քսանեկուերորդ օրը: *Ես աչքերս բացեցի՝ իմ առջև կանգնած էր Հասանը: Ես նրան ասացի.*

*— Ուտելու բան տուր:*

*Հասանը պայուսակից հանեց հաց, պանիր, մի սալիկ շոկոլադ: Ես շոկոլադը ծծեցի, բայց ուտել չկարողացա. ուժ չունեի: Հետո բժիշկն ասաց՝ լավ է, որ ոչինչ չէի կերել, երկար ժամանակ սոված մնալուց հետո շատ ուտել չի կարելի: Ինձ պառկեցրին պատգարակի վրա և տեղափոխեցին հիվանդանոց:*

Եվ ահա Ալյոշային հիվանդանոցից դուրս են գրում: Ես նստած եմ Մախարաձեի մանկական հիվանդանոցի գլխավոր բժիշկ Վ. Տ. Վասաձեի առանձնասենյակում: Բաց դռնից հողմի նման դուրս թռավ երեխան:

— Մո՛տ արի, ջանի՜կս,— ասում է բժիշկը:— Ինչպե՞ս ես զգում քեզ:

— Քեռի՛ Վ.ասո, չէ՞ որ արդեն ասել եմ՝ լավ եմ զգում:

Նա պատրաստվեց փախչել, բայց ես չթողեցի և համոզում էի նրան վերհիշել իր արկածները:

Ռեսպուբլիկայի վաստակավոր բժիշկ Վ. Տ. Վասաձեն լրացրեց Ալյոշայի պատմությունը: Նրան գտել էին հարազատ գյուղից 80 կիլոմետր հեռավորության վրա: Քսաներկու օր նա սնվել էր միայն հատապտուղներով և աղբյուրի ջրով: Երեխան իր քաշից կորցրել էր տասնմեկ կիլոգրամ: Մնացել էր, ինչպես ասում են, կաշին ու ոսկորը: Հյուծված օրգանիզմի վերականգնելը շատ բարդ էր: Սկզբում երեխային կերակրում էին կուրծք ուտող մանկիկի նման:

— Տասներկուերորդ օրը Ալյոշան ոտքի կանգնեց,— պատմում է բժիշկը:— Իսկ այսօր արդեն հրաժեշտ ենք տալիս նրան:

Սեպտեմբերի մեկին Ալյոշան իր դասընկերների հետ դպրոց գնաց:

# ԻՆՉՈ՞Ւ

ՓԱՍՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Փոքրիկ Սաքոն կրկես գնաց,
Բայց մի վայրկյան լուռ չմնաց.
Մեկ նստում էր, մեկ բարձրանում,
Մեկ նայում էր, տասը հարցնում.
— Այն ի՞նչ է, ա՜յ,
Ինչ մեծ է, վա՜յ...—
Տատիկը թե. — Ի՞նչ ես ճչում,
Փիղ է, տղաս, չե՞ս ճանաչում:
— Այդպես էլ փ՞իղ,— դարձավ տատին,—
Իսկ ինչո՞ւ է պոչը քթին:

# ԽՐԱՏԱԿԱՆ ՔԱՌՅԱԿՆԵՐ

ԳԵՎՈՐԳ ԳԵՂՈՒՆԻ

Այլոց թևով մի՛ թռիր,
Քո կրակը դո՛ւ վառիր,
Թե չէ՝ ուրիշը չեղավ,
Քո օջախը կսառի:

*
* *

Փոքրիկ կայծն է հուր դառնում,
Գետն առվից է ջուր առնում.
Փոքրը դու մի՛ անտեսիր՝
Կորիզը ծառ է դառնում:

*
* *

Սար մի՛ վերցնի, ա՛յ որդյակ,
Որ քեզ թողնի իրեն տակ.
Մրջյունի պես հատ առ հատ,
Մեկ էլ տեսար եղավ շատ:

*
* *

Ինչ որ կանես՝ լավ դատիր.
Սիրել փորձիր, նոր ատիր.
Զայրացած ես մեկի դեմ,
Ստուգիր՝ նոր նախատիր:



# Ինչ է սիրում ճագարը

ՀԵՆՐԻԿ ԱՐԹԵՆՅԱՆ



Մի փափկամորթ ճագարի
Տվեցի մի բուռ գարի,
Բայց ճագարը չկերավ,
Գարին կտցեց չալ մի հավ...
Այնուհետև ճագարին
Ես տվեցի թարմ մածուն,
Բայց ճագարը չկերավ,
Ու լպստեց սև կատուն...
Այնուհետև ճագարին
Մսի կտոր տվի ես,
Բայց ճագարը չկերավ,
Եկավ Զաղարը կերավ...
Ես ասացի. — Ա՛յ ճագար,
Գուցե ուտես դու շաքա՞ր:—
Բայց ճագարը չկերավ,
Զմռտեցավ ոչ մի հավ,
Զմռտեցավ սև կատուն,
Զմռտեցավ Զաղարը:
Բայց ո՞վ կերավ շաքարը,
Կերավ փոքրիկ Զաքարը:
Ես ասացի.— Ա՛յ ճագար,
Գուցե ուտես մի գազա՞ր:—
Ճագարն ասաց. — Ա՛յ Ղազար,
Մեկը ի՜նչ է, տուր հազա՜ր,
Հազար գազար ու կաղամբ
Ատամներով ես կաղամ:

Ն. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ









# ՆՇԱՆԱՎՈՐ ՄԱՐԴԿԱՆՑ ԿՅԱՆՔԻՑ

## ՄՈՑԱՐՏ

Մի անգամ տասնչորս տարեկան Մոցարտը գնում է Հռոմ և մտնում սուրբ Պետրոսի տաճարը: Տաճարում երգեհոնի վրա կատարում են եկեղեցական մի երաժշտություն, որի նոտաները պապական խորհուրդը գաղտնի էր պահում: Մոցարտը վերադառնում է տուն և հեշտությամբ նոտագրում երաժշտությունը: Տարիներ հետո այդ նոտագրությունը համեմատում են իսկականի հետ, պարզվում է, որ հանճարեղ կոմպոզիտորը ոչ մի սխալ չի կատարել:

## ԳՅՈԹԵ

Գեմանացի բանաստեղծ Գյոթեն երազում էր, որ Վայմարում, այն քաղաքում, որտեղ ինքն ապրում էր, ծաղկեն մանուշակներ: Մի անգամ նա դուրս է գալիս զբոսնելու և ամենուր ցանում է մանուշակի սերմեր: Եվ մինչև հիմա Վայմարի շուրջը գարնանը միշտ մանուշակներ են ծաղկում, նրանք կոչվում են ,,Գյոթեի մանուշակներ..:

## ՖԱՐԱԴԵՅ

Մի անգամ պարտիզպաններից մի քանիսը դիմեցին Ֆարադեյին, որպեսզի գիտնականը բացատրի, թե ինչու իրենց պարտեզում աճող բոլոր մանուշակները սպիտակ են: Դա շատ հետաքրքրեց Ֆարադեյին, և նա ենթադրեց, որ պատճառը կարող է լինել Նյուկասլ քաղաքի օդը: Նա ուսումնասիրեց օդի բաղադրությունը և հայտնաբերեց ըզգալի քանակությամբ ծծմբային անհիդրիդ, որն առաջանում է ծծմբաքարով հարուստ քարածխի այրումից: Այսպես հայտնագործվեց ծծմբային անհիդրիդի սպիտակեցնող հատկությունը, որը մինչև այսօր էլ օգտագործվում է արդյունաբերության մեջ որպես գործվածքները սպիտակեցնելու լավագույն միջոց:

## ԹԵՐՆԵՐ

Ջոզեֆ Թերները խոշոր անգլիացի նկարիչ էր: Նա մի շուն ուներ, որին շատ էր սիրում: Մի օր շունը ընկավ և կոտրեց իր ոտքերից մեկը: Թերները մարդ ուղարկեց բժիշկ կանչելու: Նա չէր ուզում անասնաբույժ կանչել և հրավիրեց Լոնդոնի լավագույն բժշկին:

Երբ բժիշկը եկավ, Թերներն ասաց.

— Բժիշկ, անչափ ուրախ եմ ձեզ տեսնելուս համար: Իմ շունը ընկել ու կոտրել է ոտքը: Ես, իհարկե, գիտեմ, որ մի շան համար ձեզ նման անվանի մի բժշկի հրավիրելն անհարմար է, բայց խնդրում եմ օգնեք ինձ: Ես ձեզ լավ կվճարեմ:

Բժիշկը ոչինչ չասաց և փրկեց շանը:

Հաջորդ օրը բժիշկը խնդրեց Թերներին այցելել իրեն:

— Ըստ երևույթին շանս կապակցությամբ է բժիշկն ուզում տեսնել ինձ,— մտածեց Թերները:



Երբ Թերներն արդեն բժշկի տանն էր, նա ասաց.

— Միստր Թերներ, շատ ուրախ եմ ձեզ տեսնելուս համար: Ես ձեզ խնդրում եմ ներկել իմ դուռը: Ես գիտեմ, իհարկե, որ նման դեպքում ձեզ նման մեծ նկարչին հրավիրելը անպատշաճ էր, բայց խնդրում եմ ներկեք՝ ես ձեզ շատ լավ կվճարեմ:

## ՌՈՍՍԻՆԻ

Իտալական հանճարեղ կոմպոզիտոր Ռոսսինին մի առավոտ շատ վաղ արթնացավ: Նրան արթնացրեց մի շրջմոլիկ, որն իր հնացած երգեհոնով պատուհանի տակ նվագում էր հենց իր՝ Ռոսսինիի «Վիլհելմ Տելլ» օպերայի նախերգանքը, բայց այնքան աղավաղված ու զարհուրելի, որ Ռոսսինիի մարմնով սարսուռ անցավ: Նա որոշեց դուրս գալ և այդ շրջմոլիկի վզակոթին տալ: Բայց իսկույն փոխեց որոշումը, բաց արեց պատուհանը և ներս կանչեց շրջմոլիկին:

— Դո՞ւ ճանաչու՞մ ես կոմպոզիտոր Հելլենին:

Հելլենը միջակ կոմպոզիտոր էր և Ռոսսինիի հակառակորդներից մեկը:

— Այո՛, ճանաչում եմ...

— Դու կարո՞ղ ես նրա ստեղծագործություններից նվագել այնպես, ինչպես իմը:

— Անշուշտ, պարոն, ցանկանու՞մ եք հենց հիմա նվագեմ:

— Ո՛չ,— ասաց կոմպոզիտորը և, տալով նրան մի ոսկեդրամ, շարունակեց.— Վաղը այս նույն ժամին գնացեք նրա պատուհանի տակ և երեք անգամ նվագեք իր երգերից մեկը:

— Կգնամ, պարոն, բայց դուք շատ ժլատ եք երևում, քանի որ ինքը՝ պարոն Հելլենը, ձեր պատուհանի տակ նվագելու համար ինձ տվեց երեք ոսկի, —պատասխանեց շրջմոլիկը:

## ՀԻՊՈԼԻՏ ՏԵՆ

Մի անգամ ֆրանսիացի գեղագետ փիլիսոփա Հ. Տենի մոտ հայտնվեց մի հարուստ ազնվական իր քսանամյա որդու հետ: Փիլիսոփան տհաճությամբ, բայց սիրալիր ընդունեց նրանց:

— Պարո՛ն Տեն,— սկսեց ազնվականը, երբ արդեն ընկղմվել էին բազկաթոռներում,— իմ որդին ոտանավորներ է գրում, ինչպես Բայրոնը, և նկարում, ինչպես Ռուբենսը: Բայց ես գտնում եմ, որ նա պետք է դրանցից մեկը դառնա, կա՛մ Բայրոն, կա՛մ Ռուբենս, քանի որ դրանցից բացի, նա պետք է վարի նաև իր առևտրական գործերը: Որպես խոշոր փիլիսոփա, միայն դո՛ւք կարող եք ասել, թե ինչով զբաղվի նա:— Հետո նա բաց անելով մի փաթեթ՝ փիլիսոփայի առաջ դրեց ոսկեզօծ շրջանակով մի նկար, որը խզբզոցի էր նման.— Ահա մի նմուշ նրա նկարներից: Իսկ այս



գրքույկում հավաքված են նրա լավագույն երգերից մի քանիսը.— և ազնվականը ոգևորված սկսեց կարդալ:

Բայց քիչ անց, Տենը ընդհատեց.

— Ասացեք խնդրեմ, այսքան վատ ներկեր որտեղի՞ց եք ճարել:

Ազնվականը ժպտաց, ուրեմն նկարն ավելի գերեց փիլիսոփային, որդին անշուշտ կդառնա Ռուբենս: Ի՞նչ զուգադիպություն, չէ՞ որ Ռուբենսը, բացի նկարիչ լինելուց, դիվանագետ էր:

— Ես այդ ներկերը բերել եմ Անգլիայից: Նրանք այնքան թա՜նկ են...

Մի պահ լռություն տիրեց, և հանկարծ փիլիսոփան վեր կացավ:

— Ի դեպ արդեն ճաշի ժամ է: Դուք երևի դեռ չեք ճաշել: Պարոններ, ես ձեզ հրավիրում եմ ճաշի...

Շփոթված ազնվականը նայեց Տենին:

— Բայց, պարոն փիլիսոփա, դուք չ ասացիք, թե որդիս ինչո՞վ զբաղվի:

— Թող շարունակի միայն գրել:

— Գրե՞լ...

— Այո՛, այո՛, չէ՞ որ յուղաներկերը ավելի թանկ են, քան թուղթն ու թանաքը...

## ԱՐՔԻՄԵԴԻ ՄԱՀԸ

Խճանկարը կեղծել դժվար է: Շատ բարդ և անշնորհակալ խնդիր է բազմահազար գունավոր ապակիներից պատկեր նկարել, այն էլ այնպիսի պատկեր, որ նմանվի անտիկի: Բայց, երևի, կեղծիքներ կատարող վարպետին ոչինչ չի սարսափեցնի, եթե նա կեղծիքը լավ գնով վաճառելու հույս ունի:

Մայնի Ֆրանկֆուրտի (ԳՖՌ) քաղաքային պատկերասրահում պահվում է մի «հռոմեական» խճանկար, որը ձեռք է բերվել Նապոլեոնի եղբայր Ժերոմ Բոնապարտի ժառանգներից: Այդ խճանկարը վերագրում էին մ. թ. 1-ին դարին: Համարում էին, որ այն գտնվել է Հերկուլանումի պեղումների ժամանակ: «Ձեռք մի՛ տուր իմ գծագրերին»,— դրանք Արքիմեդի վերջին բառերն էին, երբ նա տեսավ իր վրա բարձրացրած հռոմեական լեգիոների սուրը: Այդ տեսարանն էլ պատկերված է խճանկարի մեջ:



Սակայն ինչո՞ւ ռազմիկի վրա կա զրահ, որը մ. թ. 1-ին դարում հռոմեացիք չէին կրում: Միայն մ. թ. 2-րդ դարից, երբ Հերկուլանումը և Պոմպեյը վաղուց արդեն գտնվում էին մոխրի շերտի տակ, հռոմեական բանակում երևան են գալիս այդպիսի մետաղյա զրահներ: Ռազմիկի ծածանվող թիկնոցը շատ քիչ է նման հռոմեականին: Լեգիոների կեցվածքը հիշեցնում է Վերածնության կամ ֆրանսիական հեղափոխության դարաշրջանի հերոսներին: Այսպիսով պարզվեց, որ խճանկարը ոչ մի արժեք էլ չունի և միայն մի հաջող կեղծիք է:

## ՓՂԵՐԸ ՊԱՇԱՐԵՑԻՆ ՔԱՂԱՔԸ

*Վերջերս փղերի մի ամբողջ հոտ հարձակվեց Սուդանի Գեննա քաղաքի վրա: Կուսական անտառների այդ արքաները գիշերը գրավեցին քաղաքը շրջապատող այգիների և դաշտերի մեջ: Չնայած բնակչության ձեռք առած միջոցներին, կենդանիները չհեռացան և շարունակեցին ամայացնել քաղաքի շրջապատը:*

*Քաղաքային իշխանությունները ստիպված էին դիմել բանակի և ոստիկանական ստորաբաժանումների օգնության: Բայց ո՛չ ամենախլացնող հատուկ հարմարանքները և ո՛չ էլ հրաձգությունը չկարողացան փղերին փախցնել: Վերջապես որոշեցին սպանել մի ծեր, արու փղի, որը ինչպես ենթադրում էին, ղեկավարում էր փղերի գործողությունները: Միայն դրանից հետո էր, որ հոտը դիմեց փախուստի: Փղերի նահանջը պաշտպանում էին յոթ հզոր արու փղեր:*





# Սկսնակ շախմատիստի դպրոց

## դասավանդում է աշխարհի չեմպիոն ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

### ԿԱՐՃԱՏԵՎ ՊԱՐՏԻԱՆԵՐ

Այս անգամ մենք կքննարկենք մի շարք կարճ պարտիաներ, որոնք արագորեն եզրափակվել էին հակառակորդներից մեկի «ջախջախմամբ»: Ուշադրությամբ հետևեցեք իրադարձությունների զարգացմանը: Աշխատեք հասկանալ պարտվողի թույլ տված սխալների էությունը՝ խաղի հիմնական ստրատեգիական սկզբունքների խախտումները, ինչպես նաև տարբերակների սխալ հաշվումները:

#### Պարտիա № 1

1. e2—e4 e7—e5

Այսպիսի սկզբնական քայլերով բնորոշվող դեբյուտները (սկզբնախաղերը) կոչվում են բ.ա ց: Բաց խաղասկիզբների բնորոշ հատկանիշը առաջին քայլերից ֆիգուրների արագ զարգացման հնարավորությունն է: Վայ նրան, ով մոռանում է այդ:

2. Ձg1—f3 d7—d6 3. Փf1—c4

Սևերը նախապես f7 կետի պաշտպանությունն են նախապատրաստում: Չէ՞ որ 3...Ձf6 քայլին կարող էր հետևել 4. Ձg5՝ վտանգավոր սպառնալիքներով: Այն ժամանակ նյութական կորուստներից խուսափելու միակ միջոցը կլիներ 4...d5, իսկ բնական 5.ed Ձ:d5 6.Թf3! (կրկնակի հարվածով d5 և f7 կետերի վրա) Թ:g5 7.Փ:d5 (ևս մեկ կրկնակի հարձակում՝ այս անգամ f7 և b7 զինվորների վրա), շարունակությունը կհանգեցներ սպիտակների առավելության: Ուստի ավելի լավ էր 3...Փe7: Ինչո՞ւմն է 3...h6 և 3...Փe7 քայլերի հիմնական տարբերությունը: Փղի քայլը ոչ միայն կանխում է հակառակորդի հնարավոր գրոհը, այլև միաժամանակ ֆիգուրն է զարգացնում: Շախմատում իբրև կանոն մեկ քայլով մի քանի խնդիր լուծելու հնարավորությունը՝ լավագույն ապացույցն է, որ այդ քայլը ուժեղ էր: Ավելացնեմ, որ Փe7-ից հետո սևերը հնարավորություն էին ստանում արագորեն Ձf6 խաղալ և այնուհետև փոխատեղվել կարճ կողմում:

4. Ձb1—c3 Փc8—g4?

Զարմանաք, որ այս քայլը գրված է հարցական նշանով: Թեև սևերը փիղն են զարգացնում, նախորդ քայլում թույլ տված սխալը արդեն զգացվում է: Հենց դրանում էլ կայանում է շախմատի տրամաբանությունը: Թույլ տված սխալը պատժվում է, թեև ոչ միշտ արագ ու վճռականորեն, և հակառակորդի ճիշտ խաղի դեպքում այն ուղղել չի հաջողվում:

5. Ձf3:e5! Փg4:d1

Համեմատաբար լավ էր 5...de, բայց և այն ժամանակ 6. Թ:g4 քայլից հետո սպիտակները մեկ ավելի զինվոր կունենային:

6. Փc4:f7+ Աe8—e7 7. Ձc3—d5×!




Իզուր չեն ասում, որ շախմատում ֆիգուրները պատերազմում են ոչ թե թվով, այլ հմտությամբ: Սևերը ավելի թագուհի ունեն, որը խոշոր առավելություն է համարվում: Սակայն սևերի ողջ բանակը գտնվում է սկզբնական դիրքերում և փաստորեն պայքարին չի մասնակցում: Օրինաչափ է, որ իրենց ֆիգուրները զարգացնելով սպիտակները վճռական հարված հասցրին:

#### Պարտիա № 2

1. e2—e4 d7—d6 2. d2—d4 Ձb8—d7 3. Փf1—c4 g7—g6 4.Ձg1—f3 Փf8—g7? 5.Փc4:f7+! Աe8:f7 6. Ձf3—g5+

Սևերի սխալը սպիտակներին թույլ տվեց իրականացնել կոմբինացիա՝ փղի զոհաբերմամբ:



Այժմ, ուր էլ որ սև արքան նահանջի, սպիտակները առավելություն կստանան: 6...Աe8 կամ 6...Աf8 քայլից հետո սպիտակ ձին գրավելով e6 դաշտը՝ «գերի» կվերցնի սև թագուհուն, իսկ 6...Աf6 քայլին կհետևի... սակայն, ինքներդ գտեք, թե ինչպես կզարգանար խաղը այդ դեպքում:

### Պարտիա № 3

1. e2—e4 d7—d5 2. e4:d5 Թd8:d5 3. Ձb1—c3 Թd5—a5 4. d2—d4 c7—c6 5. Ձg1—f3 Փc8—g4 6. Փc1—f4 e7—e6 7. h2—h3 Փg4:f3 8. Թd1:f3 Փf8—b4 9. Փf1—e2 Ձb8—d7 10. a2—a3

Մինչև հիմա պարտիան նորմալ էր զարգանում: Սևերի հետևյալ բնական քայլը վճռական սխալ էր:

10...0—0—0?



11. a3:b4 Թa5:a1+ 12. Աe1—d2:

Թվում է, թե սև թագուհին ծուղակի մեջ է ընկել՝ նահանջի ճամփան փակ է: Սակայն, այս ի՞նչ է: Թագուհուն կարելի է փրկել՝ վերցնելով գրոհող նավակը:

12... Թa1:h1:

Ուրախանալը վաղաժամ է: Քայլը սպիտակներինն է, և տեսեք, թե ինչպես գեղեցիկ է եզրափակվում խաղը:

13. Թf3:c6 ! b7:c6 14. Փe2—a6×!



Աշխատեք հիշել բոլոր դիագրամներում պատկերված դիրքերը: Նման, ինչպես շախմատիստներն են ասում, տիպիկ դիրքեր և դրանց նախորդող կոմբինացիաներ, յուրաքանչյուր վարպետ տասնյակներով և հարյուրներով գիտի: Եվ դա հասկանալի է: Չէ՞ որ դա շախմատի «բազմապատկման աղյուսակն է»:

Եթե դուք ուշադիր հետևեք երկրորդ և երրորդ պարտիաների իրադարձությունների ընթացքին, պետք է որ հարց ծագի, ինչպե՞ս թե, քայլեր, որոնք պարզվեց, որ վճռական սխալներ էին, միաժամանակ զարգացնող էին, սակայն ինչո՞ւ նրանք «աղետի» պատճառ դարձան:

Հիշեցե՛ք՝ շախմատում կարևորագույն դերն է խաղում կոնկրետ մոտեցումը, կոնկրետ գնահատումը, տարբերակների կոնկրետ հաշվումը: Շախմատային օրենքների համաձայն ճիշտ թվացող յուրաքանչյուր քայլը պետք է ճշտված լինի տարբերակներով:

№ 3 պարտիայում սևերը չափազանց հուսով էին, որ նրանց փիղը անձեռնմխելի է: Տարբերակի հաշվումը նրանց կողմից սխալ էր և հերքվեց սպիտակների ավելի հեռու և ճիշտ հաշվումներով:

### Սովորեք վերլուծել

Յուրաքանչյուր շախմատիստ առաջին քայլերն անելիս պարտություններ է կրում: Դրանք չպետք է վհատեցնեն, պետք է անել այնպես, որպեսզի սխալները չկրկնվեն: Դրա համար անհրաժեշտ է գրի առնել ձեր պարտիաները: Ինչո՞ւ համար է այդ պետք: Մրցումները ավարտվելուց հետո ինքնուրույն, ընկերների հետ կամ ավելի փորձառու և ավագ շախմատիստի հետ վերլուծեք ձեր պարտիաները, աշխատեք հասկանալ, որն էր անհաջողությունների և հաջողությունների պատճառը: Եթե գաք այն եզրակացության, որ շահել եք ոչ թե ձեր լավ խաղի հետևանքով, այլ ավելի շուտ հակառակորդի սխալների շնորհիվ, ապա այդ լավ է: Դա կնշանակի, որ դուք ինքնաքննադատությամբ եք համակված: Առանց հաղթանակների և պարտությունների պատճառների լուրջ կշռադատության, շախմատիստի աճը անհնարին է:

Պարտիաների գրառումը աստիճանաբար սովորություն կդառնա: Լավ կլինի, եթե այդ նույն տետրում (եթե հնարավորություն չկա հատուկը սարքել) դուք ինքներդ դիագրամներ նկարեք (դրա համար պարտադիր չէ նկարիչ լինել, անհրաժեշտ է միայն պրակտիկա) և ազատ ժամանակ մտքում կրկին ու կրկին խաղալ հնարավոր տարբերակներ: Առանց խաղատախտակի, առանց ֆիգուրները տախտակի վրա շարժելու, «կույր» վերլուծությունը՝ տարբերակների հաշվումների տեխնիկայի կատարելագործման լավագույն միջոցն է:

# «ԸՆԿԵՐԸ»



Նկ. ՀԱՅԿ ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆԻ

ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ

Արմենն ու Աշոտը, որ եկել էին Գևորգից թըվաբանական խնդիրների պատասխաններն արտագրելու, բակ մտնելով՝ զարմացած կանգ առան: Գևորգը, վերարկուն հագին և մայրիկի ծաղկավոր գոգնոցը կապած՝ լվացք էր փռում ու մերթ ընդ մերթ շփում էր ծեռքերի սառած տեղերը:

— Դու կփռեի՞ր,— ասաց Արմենը Աշոտին:

— Ա՛յդ էր պակաս,—պատասխանեց նա: —Աղջի՞կ եմ, ի՛նչ է:

— Ես էլ:

Ընկերները կամացուկ փոթկացրին:

— Բարև՛, մորաքո՛ւյր,—Գևորգին դիմելով՝ կեղծ լրջությամբ ասաց Արմենը, — Գևորգը տանը չէ՞:

— Ո՛չ, տանը չէ, բակում լվացք է փռում,— առանց շփոթվելու պատասխանեց Գևորգը:

— Իսկ չգիտե՞ք, նա խնդիրները լուծե՞լ է:

— Դեռ չի լուծել,— պատասխանեց Գևորգը՝ շարունակելով փռել շորերը:

— Մի ժամ հետո որ գանք, լուծած կլինի՞:

— Չգիտեմ:

— Երկու ժամ հետո՞:

— Չէ՛:

— Բա հետո ո՞նց գանք, մութը կընկնի:

— Մի՛ եկեք:

— Ինքը կբերի, հա՞:

— Ո՛չ էլ կբերի:

— Ի՛, բա ի՛նչ ենք անելու,— անհանգստացան Արմենն ու Աշոտը:

— Սրանից հետո սովորեցեք ինքնե՛րդ լուծել:

— Լավ,— զիջեցին ծույլիկները,— խնդիրների պատասխանները մենք Սերոբից կարտագրենք: Դու մեզ համար միայն մի հատ շարադրություն գրիր. վաղն ընկեր Բաբկենը շարադրություն է հանձնարարելու:

— Ա՛յ, դա կարելի է,—ասաց Գևորգը,—ծեր շարադրությունը ես արդեն գրել-պատրաստել եմ, հիմա կբերեմ:

Արմենն ու Աշոտը վերցրին շարադրությունն ու սկսեցին կարդալ.

«Իմ ընկեր Կարոն:

Իմ դասընկեր Կարոն ինձ համար ամեն ինչ անում էր: Թվաբանական խնդիրներ էր լուծում, հուշում էր, երբ նեղն էի ընկնում, դասամատյանը կարդալիս, իմ փոխարեն, երբեմն նույնիսկ «ներկա՛» էր բացականչում...

Այսպես ավարտեցի դպրոցն ու ընդունվեցի ինստիտուտ:

Այնտեղ էլ մի լավ ընկեր գտա, որ ինձ համար ամեն ինչ անում էր. գծագրում էր, քիմիայի փորձեր դնում, արհեստանոցում զանազան առարկաներ պատրաստում:

Ավարտեցի ինստիտուտն ու դարձա աշխղեկ:

Շատ էի ուզում, որ աշխատանքում էլ մի հատ այդպիսի ընկեր ունենամ, որ իմ փոխարեն ամեն ինչ անի: Բայց չէի կարողանում գտնել:

Արդեն մենակ էի ու անհանգիստ. հանկարծ բանվորներն այնպիսի բան չհարցնեն, որ ես չիմանամ:

Հակառակի նման, մի օր որմնադիր Առաքելը նայեց գծագրին ու ինչ-որ բան հարցրեց: Ես մտածեցի, մտածեցի ու այնքան անհեթեթ պատասխան տվեցի, որ բանվորները երկու շաբաթ ծիծաղում էին վրաս»:

Տղաները կարդացին ու մինչև ականջները կարմրելով՝ հեռացան:

Շարադրությունն ազդել էր:

# Անակնկալ նամակը

ԱՂԱՍԻ ԹՈՒՐԱՋՅԱՆ

— Պատվիրված նամակ ունեք: Տաշքենդից է:

— Դու՞ չե՞ք սխալվել: Մենք Տաշքենդում ոչ մի ազգական կամ ծանոթ չունենք,— ասացի ես:

— Չգիտեմ, դուք այնտեղ ազգական ունե՞ք, թե՞ ոչ, բայց ծրարի վրա պարզ գրված է ձեր հասցեն:

Ես ստիպված վերցրեցի ծրարը: Փոստատարը ուզում էր դուրս գնալ:

— Սպասե՛ք,— ձայն տվեցի ես,— այստեղ ազգանուն էլ չկա.

Փոստատարը զարմացած հայացքով նայեց երեսիս, վերցրեց նամակը, շփոթված հազաց, ծոցագրպանից հանեց ակնոցը և ամրացնելով քթին, սկսեց ուշի-ուշով զննել այն:

— Սխալմունք ամեն մարդու հետ պատահում է, սիրելիս, բայց երբ որ ժամանակին ես ուղղում, լավ է,— ասացի ես ժպտալով:

— Ձեր տանը Շամբիկ անունով որևէ մեկը կա՞,— ակնոցը հանելով՝ հարցրեց փոստատարը:

— Այո, աղջիկս է,— պատասխանեցի ես, փոքր-ինչ անհարմար զգալով, որ չէի նկատել հասցեից հետո գրված անունը:

— Ո՞ւր է հիմա նա:

— Դպրոց է գնացել:

— Քանի՞ տարեկան է:

— Տասնչորս տարեկան է, սովորում է 8-րդ դասարանում:

— Այդ բանն էլ ինձ բավական է համոզվելու համար, որ այստեղ ոչ մի սխալմունք չկա: Նամակը ձերն է,— պաշտոնական դեմք ընդունելով՝ ասաց նա,— ցտեսություն:

— Ցտեսություն,— ասացի ես և իսկույն բաց արի ծրարը. այնտեղ տեսա՛ թե ինչ էր գրված.

«Բարևներ իմ թանկ Շամբիկի ծնողներին: Չգիտեմ, Շամբիկը ձեզ պատմե՞լ է, թե՞ ոչ, բայց ես հարկ համարեցի մանրամասն գրել այն ամենի մասին, ինչ պատահեց, երբ դուք նրան հանձնեցիք ինձ և խնդրեցիք ուշադրություն դարձնել: Չթողնել վագոնից-վագոն անցնի կամ իջնի գնացքից՝ որևէ բան գնելու նպատակով: Գնացքը շարժվեց, Շամբիկը պատուհանից երկար ժամանակ նայում էր, իսկ երբ մի կողմ քաշվեց, նրա աչքերը թրջված էին: Ես Շամբիկին սկսեցի խոսեցնել, որպեսզի մոռացության տա ձեզ: Շամբիկը սկզբում չէր ուզում պատասխանել: Տհաճությամբ էր նայում ինձ: Նա նույնիսկ խնդրեց թույլ տալ տեղափոխվելու մյուս կուպեն: Նա ջանում էր ինձ հասկացնել, որ ինքը արդեն մեծ է, անհանգստանալու ոչինչ չկա:

Ես նրան թույլ չտվի:

— Սա տրամվայ չէ, որ ով որտեղ ուզի՝ նստի,— ասացի ես:

Առավոտյան մենք միասին նախաճաշեցինք:

Ճիշտն ասած, նա ինձ բարկացրեց: Չէր ուզում ուտել: Մի կերպ համոզեցի:

Նախաճաշից հետո նա թե.

— Տատի՛, մյուս կայարանում կիջնեմ և մրգաջուր կգնեմ:

— Գնացքից ես կմնաս, աղջիկս,— ասացի ես:

Շամբիկը նորից հոնքերը ոլորեց և ցածր ձայնով ասաց.

— Դու ինձ երեխայի տեղ ես դրել...

Մոտենում էինք կայարանին: Ես բացեցի ճամպրուկս, որպեսզի դրամ վերցնեմ մրգաջուր գնելու համար: Ձեռքս այս ու այն կողմ տարա, բայց իզուր: Ինձ թվաց, թե ամեն ինչ աչքիս պտտվում է:

— Ի՞նչ պատահեց, տատիկ,— տեղից վեր թռավ Շամբիկը,— քեզ վա՞տ ես զգում:

— Ո՛չ,— հազիվ կարողացա խոսել ես:— Դրամապանակս... թողել եմ տանը...

— Դրա համա՞ր ես այդպես վատ զգում,— հարցրեց նա:

— Հա՛, որդի, հա՛,— ասացի ես:

Շամբիկը լիաթոք սկսեց ծիծաղել:

— Ուտելու ամեն ինչ ունենք,— ասաց նա:— Իսկ մրգաջուր ես կգնեմ: Երեք ժամից էլ կլինենք Բաքվում:

— Աղջի՛կս, ես դեռ հետո եմ գնալու, շոգենավ եմ նստելու, Տաշքենդն այնքան էլ մոտիկ չէ: Ուտելիքը դեռ ոչինչ, իսկ առանց դրամի...





# ՀԵՐՈՍ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԱՆՈՒՆՈՎ

Դրուժինայի հավաքույթը պետք է սկսվեր երեկոյան ժամը հինգն անց կեսին: Բայց ուղիղ ժամը հինգին ես մտա դպրոց: Քիչ հետո հնչեց վերջին դասի զանգը: Երեխաները աղմուկով հրեցին դասասենյակների դռներն ու անհամբեր թափվեցին միջանցք, որը ծառայում էր որպես դահլիճ:

—Ուռա՜, արդեն պատրաստ է...

— Ի՜նչ մեծ բեմ է՜...

Այսպես աղմկելով ու կարծիքներ փոխանակելով, պիոներները տեղավորվեցին մի- ջանցքի նստարանների վրա:

Աղմուկն անտանելի էր, բոլորը բարձրաձայն խոսում էին, գոռում, ուզում էին իմանալ՝ ինչ է կատարվում վարագույրի հետևում:

— Այստեղ ոչ մի հավաքույթ էլ չի լինի,— արդեն հուսահատվեցի ես ու սկսեցի ստիճանններով ցած իջնել:

Բայց հենց այդ ժամանակ մի սևահեր, փոքրիկ աղջիկ գրավեց իմ ուշադրությունը: Նա մեծ դժվարությամբ առաջին հարկից բարձրացնում էր իրենից երկու անգամ մեծ դրոշը:

— Ինչո՞ւ ես դրոշը վերցրել, դու փոքր ես և չես կարող բարձրացնել,— ասացի ես:

— Ես բոլորովին էլ փոքր չեմ, արդեն պիոներ եմ, և ընկեր Սուսաննան ասաց, որ դրոշը ես պետք է ներս տանեմ,— վիրավորված պատասխանեց աղջիկը:

Ես նորից վերադարձա դահլիճ, որն արդեն լեփ-լեցուն էր: Վերջապես բեմում երևաց Սուսաննան՝ Երևանի 51-րդ դպրոցի Ամիրյան եղբայրների անվան պիոներական դրուժինայի խորհրդի նախագահը:

— Այսօրվա մեր հավաքույթը՝ նվիրված հերոս պիոներներին, հայտարարվում է բացված,— հայտարարեց նա:

Բոլորն ուրախ ծափահարեցին: Տիրեց խորհրդավոր լռություն: Ջոկատի խորհրդի նախագահների զեկույցից հետո, թմբուկների ռիթմիկ համազարկերի տակ հպարտ դահլիճ մտավ արդեն ինձ ծանոթ փոքրիկ աղջիկը՝ դրուժինայի դրոշը բարձր բռնած: Քիչ անց, դահլիճը մթնեց, դանդաղ բացվեց բեմի վարագույրն ու երևաց հետաքրքիր մի տեսարան: Հեռվից երևում էր հայկական լեռնաշխարհը ու աստղալից երկինքը: Բարձր լեռան ստորոտում, խարույկի շուրջը մի քանի պատանիներ նստած զրուցում էին իրենց հասակակիցների մասին, այն պիոներների մասին, որոնք նույնպես կրել են պիոներական վզկապներ, ապրել են, կռվել և ընկել հերոսի մահով:

Իրար հետևից Վերոնիկան, Էդիկը, Ռուբիկը, Գոհարիկը, Էլմիրան, Ջուլիետան և Սուսաննան պատմեցին Գրիշա Հակոբյանի, Վոլոդյա Դուբինինի, Մարատ Կազեյի, Վալյա Կոտիկի, Մանյա Գալաֆեևայի, Վասյա Ծիշկովսկու և ուրիշ շատ հերոս պիոներների մասին: Ամբողջ ժամանակ բեմի հետևից լսվում

---

—Իսկ դուք Բաքվում ծանոթներ չունե՞ք,—հարցրեց Շամբիկը:

— Ո՛չ:



— Իսկ ինչու՞ եք գնում Տաշքենդ:

— Մեծ տղաս այնտեղ է ապրում: Գնում եմ նրա մոտ: Թոռնիկներիս էլ շատ եմ կարոտել:

— Ես էլ տատիկ ունեմ,— ասաց Շամբիկը,—Բաքվում է ապրում: Հայրիկս խոստացել էր, որ եթե ես գերազանց գնահատականներով փոխադրվեմ, անպայման ինձ Բաքու կուղարկի: Հիմա էլ գնում եմ:

Գնացքը դանդաղեցնելով ընթացքը, կանգ առավ: Ես մոտեցա պատուհանին և զննող հայացքով նայում էի անցուդարձ անողներին, աշխատելով գտնել նրանց մեջ մի որևէ ազգականի կամ ծանոթի, բայց ոչ մի ծանոթ չերևաց:

Երբ հասանք նավահանգիստ, ես մոտեցա դրամարկղին, տոմսավաճառին առաջարկեցի գնել իմ ոսկյա մատանին, որը միակ հիշատակն էր իմ ամուսնուց: Բայց նա հրաժարվեց, ասելով, թե ոսկեղենով տոմս չեն վաճառում:

— Մատանին պահեք՝ չկորչի, ես տոմս կգնեմ, տատիկ:— Ասաց Շամբիկը և դրամը մեկնեց տոմսավաճառին:

Տոմսի հետ միասին Շամբիկը ափիս մեջ դրեց նաև երկու հատ ռուբլիանոց: Ես հուզվեցի, չկարողացա նույնիսկ շնորհակալության խոսք ասել, միայն լուռ համբուրեցի նրա ճակատը: Իսկ Շամբիկը թե.

էր քաղաքացիական կռիվների և հայրենական պատերազմի մարտիկների հերոսական երգը, գընդացրային կրակոցների ամմուկն ու արկերի շառաչը: Բոլորը հուզված և ուշադիր լսում էին: Հետո բացատում նստած աղջիկներից մեկը դարձավ Սուսաննային և հարցրեց.

— Այդ բոլոր պիոներները ապրել են պատերազմի տարիներին, կատարել են գործեր, որոնց համար հերոսներ են դարձել: Իսկ հիմա մենք ի՞նչ հերոսություն կարող ենք անել:

—Դա ճիշտ է...—մի քիչ շփոթված անսպասելի հարցից՝ սկսեց Սուսաննան:— Բայց հերոս դառնալու համար պարտադիր չէ կռվել: Ա՛յ, եթե մենք անտարբեր չանցնենք գնացքի կտրված ռելսերի կողքով և փրկենք հազարավոր ուղևորների կյանքը, մի՞թե դա հերոսություն չէ: Հերոսություն չէ՞, որ մենք պետությանը հանձնել ենք 20 տոննա մետաղի ջարդոն, որից պատրաստված էլեկտրասյուները ավելի կզարդարեն գեղեցիկ Երևանը, իսկ «Լապտերիկ» շարքի կատարած հիանալի աշխատանքները, դպրոցի շրջակայքի մաքրումը քարակույտերից և սպորտհրապարակի ստեղծումը, մի՞թե այս բոլորը քիչ գործ է:

Ու երկար զրուցում էին պիոներները հերոսների և հերոսության մասին:

Վարագույրը դանդաղ սկսեց փակվել: Դահլիճը ցնծաց և որոտաց ծափերից: Իսկ առաջին, 3-րդ, 4-րդ և 5-րդ ջոկատի պիոներները ավելի ուրախացան, Սուսաննան հանդիսավոր կերպով նրանց հանձնեց դրուժինայի փոխանցիկ դրոշը:

Դրուժինայում ջոկատների միջև հենց տարեսկզբից մրցություն էր ծավալվել և յուրաքանչյուր ջոկատ ձգտում էր արժանանալ իր սիրած հերոսի անունը կրելու պատվին:

— Այսօր դրուժինայի խորհուրդը որոշեց, — հանդիսավոր հայտարարեց Սուսաննան, — պիոներական աշխատանքները լավ կազմակերպելու և շնորհալի նախաձեռնությունների համար առաջին ջոկատը կոչել Սոյոպա Մանուկյանի, 3-րդ ջոկատը՝ Գրիշա Հակոբյանի և 9-րդ ջոկատը՝ Հունան Ավետիսյանի անունով:

## *Մարտական փառքի արշավ*

Նորից ծափահարություններ: Ավարտվեց հավաքույթի հանդիսավոր մասը: Կարճ ընդմիջումից հետո երեխաները սիրով լսեցին իրենց ընկերների՝ Համիկի, Էդիկի, Ռուբիկի, փոքրիկ Կարինեի կատարած ուրախ երգերն ու պարերը, արտասանությունները: Պիոներները գոհ գնացին տուն:

Օգտվելով առիթից, ես ուզում եմ մի փոքրիկ դիտողություն անել (գուցե կկարծեք, որ դա իմ գործը չէ) այն ուսուցիչներին, որոնք իրենց դասից բացի, ոչինչով չեն հետաքրքրվում, կարծում են, թե պիոներական աշխատանքները իրենց չի վերաբերում, որ դա միայն ավագ ջոկատավարների գործն է:

Իմ սիրելի ուսուցիչներ, եթե դուք էլ մեզ օգնեք, հավաքույթները ավելի կազմակերպված կլինեն, ամմուկն՝ ավելի քիչ:

Խնդրում եմ ներեք դիտողության համար, պարզապես ձեր օգնության կարիքը շատ ենք զգում:

ՓԻԱՍԵԹ

---

*— Ես տատիկիս համար մի նվեր պիտի գնեի, բայց դու էլ տատիկ ես, այդպես չէ՞...*

*... Ես բարձրանում էի շոգենավի սանդուղքներով, մտածելով, թե ինչպես պետք է փոխհատուցեմ:*

*Շամբրիկն հեռվում կանգնած ձեռքով էր անում: Ես շփոթվել էի: Հանկարծ շոգենավը ուժգին սուլեց և սկսեց դանդաղ հեռանալ ափից: Նոր միայն սթափվեցի, ամբողջ ուժով մեկ սկսեցի բղավել.*

*— Շամբրիկ ջա՜ն, թոռնի՜կս, ձեր հասցե՜ն:*

*Հազիվ կարողացա լսել փողոցի անունը ու տան համարը: Եվ մինչ ազգանունն էլ էի ուզում իմանալ, շոգենավը բավականին հեռացել էր ափից:*

*Ես Շամբրիկիս անունով մի փոքրիկ ծանրոց եմ ուղարկել, որը եթե չեք ստացել, շատ կասկածում: Այնտեղ իմ նոր թոռնիկի համար նվերներ կան, իսկ թե ինչ եմ ուղարկել, չեմ ուզում գրել: Կարծում եմ, որ Շամբրիկս դուր կգան տատիկի նվերները:*

*Շամբրիկն ասաց, որ տատիկը տատիկ է ուրեմն թոռնիկն էլ՝ թոռնիկ:*

*Մի քանի ամսից Երևանում կլինեմ և անպայման կգամ իմ լավ թոռնիկին տեսության:*

*Համբուրում եմ բոլորից:*
*Ձեր տատիկ»:*

*Աղջիկս ընդամենը երկու ժամ էլ չկար, ինչ դպրոց էր գնացել, բայց ինձ թվաց, թե երկար ժամանակ է, չեմ տեսել նրան: Այդ րոպեին կուզեի գրկել Շամբրիկին ու սեղմել կրծքիս:*





# ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ԿԱԹՍԱՆ



(Դանիական հեքիաթ)

Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ

Ժամանակով մի որբևայրի կին կար, որն իր մինուճար որդու հետ ապրում էր աղքատիկ մի խրճիթում։ Նրա ունեցած-չունեցածը մի կով էր։ Բայց այդ կովի գլխին էլ փորձանք եկավ։ Օրերից մի օր հայտնվեց տանտերը և պահանջեց խրճիթի վարձը։ Խեղճ որբևայրին, ճարը կտրած, կովին արձակեց, արեց որդու առաջը, որ նա տանի վաճառի՝ տանտիրոջ վարձը տալու համար։

Դեռ ծեգը չբացված, տղան ճամփա ընկավ։ Ճանապարհի կեսն հազիվ էր կտրել, երբ հանդիպեց մի ծերուկի, որը ժանգի մեջ կորած մի կաթսա էր տանում։

— Էդ ու՞ր ես գնում՝ կովն առաջդ արած, տղա՛ս։

— Գնում եմ շուկա՝ վաճառեմ,— տխուր պատասխանեց տղան և սկսեց պատմել իրենց գլուխն եկածը։

— Էհ, դու սաղ լինես, դրա համար չարժե տխրել,— մխիթարեց նրան ծերուկը,— քո կովը ես ինքս կառնեմ։ Եվ փոխարենը, ա՛յ, իմ էս կաթսան կտամ քեզ։

— Բայց ես ո՞նց կովը փոխեմ կաթսայով,— առարկեց տղան,— չէ՞ որ մայրս փողի խիստ կարիք ունի։

— Մի վախենա, — ժպտաց ծերուկը,— էս կաթսան քեզ փող էլ կտա, հավատա ինձ։ Ու հենց որ տուն հասնես, իսկույն դիր կրակին և կհամոզվես։

Տղան համաձայնեց ծերուկին։ Կովը տվեց, վերցրեց նրա ժանգոտած կաթսան և շտապեց տուն։ Խեղճ որբևայրին հենց որ լսեց որդու արածը, սկսեց մազերը փետել։

— Էդ ի՞նչ օյին ես բերել մեր գլխին, ա՛յ հիմարի գլուխ։ Ո՞վ է տեսել՝ մարդ կով ժանգոտած կաթսայի հետ փոխի։

Եվ սկսեց արտասվել ու ծնկներին խփել։ Որդին գլուխը կախել ու կանգնել էր մոր առաջ, բայց հանկարծ հիշելով ծերուկի ասածը, իսկույն կաթսան դրեց կրակին։

Հենց որ կրակի բոցը կաթսային կպավ, կաթսան թռչկոտեց ու ասաց.

— Հո՛պ-լա, հո՛պ-լա, էս բոլեխս վազեմ։

— Ո՞ւր վազես,— հարցրեց տղան։

— Գնամ տանտիրոջ խոհանոցը,— պատասխանեց կաթսան ու չքացավ։

Մի երկու րոպեից հետո բուխարու մոտ ուժեղ աղմուկ լսվեց, իսկ մի վայրկյան անց, կաթսան ճաշով լիքը եկավ ու բազմեց սեղանին։ Մայր ու որդի իսկույն ձեռներն առան գդալները և ագահությամբ այնպես սկսեցին ուտել, կարծես չտես լինեին։ Կշտանալուց հետո պառավը նորից սկսեց արտասվել և խփել ծնկներին ու գլխին։



— Օ՜խ, անխե՛լքս դու, ի՞նչ բերիր մեր գլխին։ Դու ո՞նց փոխեցիր կովը մի ժանգոտ կաթսայի հետ։

— Հո՛պ-լա, հո՛պ-լա, էս բոլեխս վազեմ։

— Ո՞ւր վազես։

— Տանտիրոջ մոտ, նրա պահեստը։

Եվ կաթսան իսկույն անհետացավ։ Բայց դեռ աչքները չէին թարթել, երբ մեկ էլ ուժեղ աղմուկ լսվեց բուխարու մոտ։ Ու կաթսան ալյուրով, մսով ու խոզի ճարպով լցված, նորից հայտնվեց սեղանին։

Մայր ու որդի պահարանը լցրին այդ մթերքներով։ Սակայն մայրը նորից սկսեց իր արտասուքները։

— Հիմա՛ր տղա, հիմա՛ր, էս ի՞նչ բերիր մեր գլխին։ Ո՞վ է տեսել կով ժանգոտ կաթսայի հետ փոխեն։ Անմիտ, մի շաբաթ էլ ուտելու բան ունեցանք, բա հետո՞. Մենք որտեղի՞ց պիտի տանտիրոջ պարտքը տանք։

Տղան գլուխը կախել ու կանգնել էր մոր առաջ։

Բայց նա նորից հիշեց ծերունու սաստը և կաթսան երրորդ անգամ դրեց կրակին։

Դեռ բոցը կաթսային չէր կպել, երբ նա սկսեց թռչկոտել ու ասաց.

— Հո՛պ-լա, հո՛պ-լա, էս բաղնիս վազեմ։

— Ո՞ւր ես վազում։

— Տանտիրոջ մոտ, նրա գանձարանը,— ասաց կաթսան ու անհետացավ։

Արդեն վերադարձի ժամանակն էր. բուխարու մոտ կրկին ուժեղ աղմուկ լսվեց, և կաթսան դարձյալ հայտնվեց սեղանին, այս անգամ լցված ոսկեդրամներով։

Մինչ պառավ որբևայրին որդու հետ կհասցնեին ոսկիները հաշվել, բուխարու միջից մի զարհուրելի ձայն լսվեց։ Դա տանտերն էր. նա ծխանցքի մեջ լսել ու չէր կարողանում ո՛չ վեր բարձրանալ և ո՛չ էլ վար իջնել։



Ուզում եք իմանա՞լ ինչ էր պատահել։ Անա թե ինչ։ Երբ տանտերը հանկարծ նկատել էր, որ ոսկեդրամներով լցված կաթսան դուրս է թռչում լուսամուտից, ձեռքը զցել էր նրա կանթին ու բաց չէր թողել նույնիսկ օդում թռչելու ժամանակ։ Եվ այդպես կանթից կախված, նա եկել հասել էր մինչև խեղճ որբևայրու խրճիթի ծխանցքը։

Կաթսան ծխանցքից մտել, իջել էր ցած, իսկ տանտերը իր չաղության պատճառով խրվել էր այնտեղ։

Հենց որ մի քիչ ուշքը գլուխը եկավ, նա սկսեց բղավել.

— Օգնեք ինձ՝ իջնեմ, բանե՛ր, թե չէ՝ սա էժան չի նստի ձեզ վրա։

Որբևայրին մահու չափ վախեցավ, իսկ տղան ծիծաղելով ասաց.

— Որտեղ ընկել ես, այնտե՛ղ էլ մնա։

Եվ մի կտոր թաց ցախ գցեց կրակին, որ ծուխը շատանա։

Տանտիրոջ շունչը սկսեց կտրվել, նա գոռաց.

— Օգնությո՜ւն, օգնեք ինձ՝ իջնեմ, ես բոլոր պարտքերը բաշխում եմ ձեզ։

Որբևայրին ուզում էր օգնել, բայց տղան ծիծաղելով ասաց.

— Որտեղ ընկել ես, այնտե՛ղ էլ մնա։

Տանտերը ծխանցքում քիչ էր մնում խեղդվի. նա գոռաց.

— Օգնե՛ք ինձ՝ իջնեմ. ես ձեզ հարստություն կտամ իմ աղջկան, ամբողջ փողերս կտամ ձեզ։

Այստեղ տղան փափկեց. բարձրացավ կտուրը և ծխանցքից դուրս քաշեց տանտիրոջը։

Մի շաբաթից հետո կատարեցին տանտիրոջ դստեր և որբևայրի կնոջ որդու հարսանիքը։

Հարսանիքի օրը կախարդական կաթսան իր տիրոջ համար տասը սքանչելի տորթ պատրաստեց, այնքան համեղ, որ աշխարհում ոչ ոք այդպիսի տորթ չէր կերել։ Դրանից հետո կաթսան անհետացավ, այս անգամ անհետացավ ընդմիշտ։ Բայց ափսոս. չէ՞ որ այդպիսի կաթսա այսօր էլ դեռ շատերին պետք կգար։

Իտալերենից թարգմ. ԳԵՎՈՐԳ ՎԻՐԱՊՅԱՆ





# Տղան ու քուռակը

ԴԻՄԻՏՐԻՍ ԽԱՋԻՍ

Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԱՐԱՄԲԵՅԱՆԻ

Երկու օր է, մայր ու տղա մենակ են կալսում: Մայրը արդեն ծեր կին է, մինչդեռ տղան տասներեք տարեկան էլ չկա: Մեքենա չի բարձրանում նրանց գյուղը: Տղան զամբիկի օգնությամբ կալսում է, իսկ մայրը հավաքում է ցորենը, հարդը առանձնացնում: Վատ տարի է, բերքը քիչ, կենդանիների հիվանդություն կա: Պարտքի տակ թաղված են: Հայրը կալսելու երկրորդ օրից թողեց նրանց ու գնաց: Գյուղի ներքևում ճանապարհի շինարարություն էր սկսվել, և գյուղացիներից շատերը հունձը շուտ վերջացնելով, մյուս աշխատանքները թողնում էին կանանց ու երեխաներին և իջնում ներքև՝ օրավարձով աշխատելու: Այդպես էին անում ամեն ամառ: Հայրն էլ էր այնտեղ գնացել մի քանի օրավարձ ստանալու հույսով:

Առաջին օրը, երեկոյան, երբ հայրը վերադարձավ, տղան հոգնած քնել էր հանգած օջախի մոտ: Հայրը մոտեցավ, նայեց քնած տղային, հետո շրջվեց նայեց կնոջը: Կինը գլխով արեց. ուզում էր ասել «այո՛»: Հայրը նստեց ուտելու, բայց նորից շուռ եկավ դեպի կինը.

— Իսկ. ինչպե՞ս է, կարողանու՞մ է:

— Ճարպիկ տղա է, աշխատասեր:

Հայրը բեղերն էր սրբում թաքցնելու համար ժպիտը:

— Ինքն էլ հոգնեց, զամբիկն էլ հալից գցեց:

— Զամբիկի՞ն: Ո՛չ, չթողնես զամբիկին լծի:

Կինը ուսերը թոթվեց:

— Ի՞նչ կարող եմ անել, խոսք չի լսում... Ամբողջ օրը անընդհատ նրա հետ է... Նույնիսկ մի կտոր հաց ուտելու համար գործը չի թողնում...

Հայրը կրկին ժպտաց և կրկին բեղերը սրբեց:

— Ասում եմ, մի՛ թողնի զամբիկի հետ... Իսկ կարողանու՞մ է:

— Քեզ համար է անում... որպեսզի դու գոհ մնաս:

— Իսկ քուռա՞կը:

— Չգիտե՞ս, նա էլ երկուսի հետևից:

— Նա՞ էլ է կալսում:

— Ի՞նչ կալսել. խաղում է:

Հայրը կրկին ժպտաց, բայց այս անգամ բեղերը չսրբեց: Ուրեմն լավ է այսպես: Տղան ու զամբիկը կկալսեն, ինքն էլ ճանապարհի շինարարությունից մի բան կստանա: Պառկեց տղայի մոտ և քնեց գոհ:

Երկրորդ օրը երեկոյան, երբ վերադարձավ, նորից տղային քնած գտավ: Նորից կանգնեց, նայեց որդուն, նայեց կնոջը, բայց ոչ մի բան չասաց: Նստեց ուտելու, ոչ մի բան չհարցրեց: Հետո վեր կացավ և գնաց կնոջ մոտ: Հայրը նեղված էր երևում. մտքում ինչ-որ բան ուներ:

— Իսկ ինչպե՞ս է գնում աշխատանքը,— հարցրեց կնոջը:

Կինը միայն ուսերն անորոշ թոթվեց:

— Ե՞րբ կվերջացնեք, ի՞նչ ես կարծում:

— Չգիտեմ, գուցե հինգ օրից:

Լռություն տիրեց:

— Ուզում եմ զամբիկին հետս տանել,— վերջապես ասաց հայրը:

— Ճանապարհին աշխատելո՞ւ համար:

— Այո՛: Ասում են, որ կառք էլ է հարկավոր... Հինգ օր. մինչև դուք վերջացնեք. հինգ օրավարձ կստանամ զամբիկի համար, հինգ էլ՝ կառքի համար...



— Իսկ կալում ի՞նչ պիտի անենք առանց զամբիկի:

Հայրը ուշադիր նայեց նրան: Հետո դարձավ նայեց քնած որդուն:

— Քուռակը կա:

— Տակավին փոքր է, Վանգելի՛ս:

— Կդիմանա, ոչինչ:

— Հետո, անվարժ է դեռ, չի սանձված, չի պայտած,— մրմնջաց կինը...— Նա դեռ միայն խաղում, ցատկոտում է:

— Մինչև վերջ չի խաղալու...

— Ո՞վ պիտի առաջին անգամ սանձի նրան:

— Տղան. նա ինձանից ավելի լավ կանի:

Չխոսեցին: Հայրը պառկեց տղայի մոտ և շուտով քուն մտավ: Կինը տակավին գործեր ուներ: Վերջացրեց և իջավ ներքև: Թարմ հարդ դրեց զամբիկի ու քուռակի առաջ: Դարձավ նայեց զամբիկին. բռնեց կենդանու գլուխը և սեղմեց իր ցամքած կրծքին: Երբ վեր բարձրացավ, մոտեցավ քնած տղային և մի անգամ էլ նրան շոյեց, գուրգուրեց:

Առավոտյան հայրը կառքը լծեց: Տղան կանգնել էր հոր կողքին երկար մտրակը ձեռքին: Նրա կողքին կանգնած էր քուռակը: Ամբողջ ամառ քուռակը տղայից անբաժան էր, հավատարիմ շան

նման նրա հետևից էր գնում: Տղան առավոտ կանուխ վեր էր կենում, իջնում էր ներքև և քաշում տանում էր դաշտ կամ տանում էր բլուրը՝ արածացնելու համար: Միշտ էլ անցնում էին արտերի միջից: Տղան երբե՞ն կանգ էր առնում, նայում չորս կողմը և սակավին չհասած եգիպտացորենի կողր էր պոկում և դնում քուռակի բերանը: Քուռակը ուտում, կուլ էր տալիս թարմ, կաթնոտ եգիպտացորենը և կլոր աչքերը դարձնելով նայում էր տղային: Տղան չէր կարողանում դիմադրել կենդանու նայվածքին, մտնում էր ցանքի մեջ և մի հատ էլ էր պոկում: Կեսօրից հետո նրան տանում էր առվակ՝ ջրելու:

— Հեծնե՞մ, հայրիկ:

— Ո՛չ, դեռ փոքր է:

— Փո՞քր է. ի՞նչ ես ասում:

— Ասում եմ՝ չհեծնես կծեծեմ.

Տղան այդպես էլ չէր հեծնում. Քուռակին ջրում էր առվակում, ինքն էլ պառկում մեջքի վրա և երկինքին նայում: Հետո առանց սանձի, առանց թամբի հեծնում էր քուռակին ու քշում-գնում էր բլրի մյուս կողմը, որպեսզի իրենց ոչ ոք չտեսնի: Երբեմն գիշեր էր լինում, բայց դեռ վերադարձած չէր լինում: Մայրը դուրս էր գալիս դռան առաջ ու ձայն տալիս.

— Սոտիրյո՜ս...



Իսկ մի օր էլ հայրը արտերի միջով գնաց դեպի կալերի ճանապարհը, իսկ տղան՝ կալի կողմը: Քուռակը դարձավ մի անգամ, նայեց զամբիկին և հետո վազեց տղայի հետևից և կանգնեց կալի մոտ: Տղան շոյեց նրա վիզը, նրա գլխին անցկացրեց պախուրցը: Քուռակը ոտները պրկեց, ցնցվեց մայունով, բայց ընդունեց պախուրցը: Տղան քուռակին կապեց կալի ձողից և ուրախացավ, որ հաջողեց առանց մեծ դժվարության: Ընկավ կենդանու առաջ, առանց բռնելու պախուրցի չվանից:

— Հայդա՛, Սոտիրյոս...

Տղան անընդհատ շրջվելով ու ետ նայելով սկսեց կալի շուրջը վազել: Քուռակն ինքն էլ շարժվեց, սկսեց վազել նրա հետևից: Վազեց մի անգամ, երկու անգամ, հետո կանգնեց: Չէ՛, նրան դուր չեկավ այս խաղը: Տղան էլ կանգ առավ: Գնաց կենդանու մոտ, շոյեց նրա պարանոցը և կրկին սկսեց վազել: Քուռակը տեղից չշարժվեց. նա աշխատում էր կծել պախուրցը: Տղան ծիծաղեց, նորից նրա մոտ գնաց:

— Նայի՛ր Սոտիրյոս... որքա՜ն խուրձեր կան. բոլորը պետք է կալսենք. ո՞վ պիտի անի...

Տղան վերցրեց չվանը, և նորից շարժվեց: Քուռակը հետևեց նրան: Արևը երկնքում ավելի բարձրացավ. քարերը, հողը տաքացան. կրակ էր թափվում: Տղան ու քուռակը քրտինքի մեջ կորած էին: Ամեն անգամ, երբ քուռակը կանգնում էր՝ կապանքներից նեղված, տղան ավելի ուժեղ էր քաշում չվանից: Կենդանին սարսափած հնազանդվում էր Աշխատանքը դանդաղ էր ընթանում: Արդեն մոտենում էր կեսօրը և դեռ առաջին խուրձերը չէին վերջացրել:

Տղան կանգ առավ. կանգ առավ նաև քուռակը, որը աշխատում էր ազատել գլուխը: Տղան աչքերի քրտինքը սրբեց, թևով էլ սրբեց քուռակի քրտինքը և նստեց հանգստանալու: Զամբիկի հետ երկու օր շարունակ աշխատել էր և ոչ մի հոգնություն չէր զգացել: Իսկ քուռակի հետ երեք ժամ էր աշխատել և մարմինը հիմա հոգնությունից ջարդվում էր:

Վեր կացավ, ցորենը հավաքեց, նոր խուրձեր նետեց գետին, վերցրեց կենդանու չվանը և նորից առաջ ընկավ:

— Հայդա՛, Սոտիրյոս... գնա՜նք...

Տղայի կանչերը օդում յունեցան: Նրա մտրակն ուժեղ շառաչեց օդի մեջ: Քուռակը տեղից չշարժվեց: Տղան մտրակը վեր բարձրացրեց և ուժով մի հատ հասցրեց կենդանու գավակին: Մեկ, երկու՝ խփեց: Քուռակը ցնցվեց հանկարծակիի եկած, ուզեց հետևի ոտքերի վրա կանգնել, խրտնեց: Պարանները, փոկերը խճճվում էին. մնաց շվարած: Տղան տեսավ ինչպես նրա քրտնած փայլուն մաշկը կծկվեց. ինքն էլ վախեցած ձեռքերը վեր բարձրացրեց: Մտրակը նետեց հասկերի վրա, վազեց և գրկեց կենդանու կուրծքը: Քուռակը գլուխը կախեց և քսեց տղայի գլխին: Այն ժամանակ տղան չկարողացավ արցունքները զսպել: Նա կենդանու գլուխը բռնել էր, սեղմում էր կրծքին և լալիս էր:

Արևը շարունակում էր բարձրանալ երկնքում: Կրակ էր թափվում երկրի վրա: Տղան նորից վերցրեց մտրակը և նորից ընկավ կենդանու հետևից. բայց հիմա լաց չէր լինում այլևս:

— Հայդա՛, Սոտիրյոս...

Ձին մի անգամ իջեցրեց գեղեցիկ գլուխը, հետո այն թափ տվեց և սուրաց հասկերի վրայով:

— Հե՜յ, հո՜...— ձայն տվեց տղան ուրախ:

Երկուսն էլ արդեն աշխատանքի համար կոփվել էին:

Հունարենից թարգմ.

Գ. ՓԱՆՈՍՅԱՆ






## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ*

# ԱՆՍՈՎՈՐ ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆ

*(Պատմվածք-վիկտորինա)*

Գնացքը շարժվելուն պես ուղևորները զբաղեցրին իրենց տեղերը: Խցիկներից մեկում հանդիպեցին իրար անծանոթ չորս երիտասարդ: Սկզբում նրանք լուռ էին, հետո տղաներից մեկը չհամբերեց.

— Եկեք ծանոթանա՛նք, — ասաց նա և դիմելով կողքին նստած աղջկան՝ ավելացրեց.— Ինչպե՞ս է ձեր անունը:

— Գիտե՞ք ինչ, — պատասխանեց աղջիկը, — ես կուզենայի, որ մենք միմյանց մասին ավելի շատ բան իմանայինք, քան միայն անունը: Հետո, լավ կլիներ, եթե դա արտահայտվեր որևէ խաղի միջոցով: Ներկա դեպքում ձեզ հետաքրքրում է իմ անունը, ուրեմն՝ եկեք հենց դրանից էլ սկսենք: Համաձա՞յն եք:

— Համաձայն եմ, — ասաց տղան:

— Իմ անունով, — շարունակեց աղջիկը, — նշանավոր շատ բան կա աշխարհում: Օրինակ, քաղաք՝ Կանադայում, կղզի՝ Բարենցի ծովում:

— Հետո՞, հետո՞:

— Հենց միայն Ավստրալիայում այդ անունով գոյություն ունի նահանգ, անապատ և վերջապես՝ գետ, ապա՝ մի գեղատեսիլ լիճ:

— Գիտե՛մ, — բացականչեց տղան, — բայց ձեր անունով էլի




շատ բան կա աշխարհում: Իսկ ամենից կարևորը դուք երևի չեք ուզում ասել: Խոսքը աշխարհի ամենաարանչելի ջրվեժներից մեկի մասին է: Այժմ դուք համոզվեցի՞ք, որ ես իմացա ձեր անունը:

— Այո՛, բայց ազգանունս դժվար թե իմանաք:



— Իսկ ի՞նչ է:

— Մեծա ազանդ արտախասնի Սիրանույշի ազգանունով եմ գրվում:


Խմբագիր՝ ՍԱՐԳ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱՐԽԱՆՅԱՆ Վ., ԴԻԴՈՐՅԱՆ Ա. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՓՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՈՎԱԶՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2 41 83, 2 59 06:

ՎՖ 67566. Պատվեր՝ 376: Տպաքանակ՝ 17650: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 5 III 1964 թ.: ... մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության ... վարչության պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ., № 91.

Գինը 20 կ.






— Քանի՞ տարեկան եք:

— Ճիշտ այն հասակում, երբ կոմպոզիտոր Ռոսսինին գրեց «Սևիլյան սափրիչ» հայտնի օպերան: Այժմ դուք պատմեք ձեր մասին:

— Խնդրեմ,— ասաց տղան,— անունս Րաֆֆունն է, ազգանունս՝ Կոմիտասինը: Ծնվել եմ



այն քաղաքում, ուր վախճանվել է Տերյանը: Ձեզ, անշուշտ, կհետաքրքրի նաև իմ տարիքը: Պետք է ասեմ, որ ձեր և իմ հասակների միջև եղած տարբերությունը հավասար է Չայկովսկու բալետների թվին: Իսկ եթե ուզում եք իմանալ, թե ով է մեզանից մեծը, ապա հիշեցեք, թե ինչ հասակում սպանվեց Լերմոնտովը: Հենց դա էլ իմ տարիքն է:

— Իսկ չե՞ք ասի, թե ուր եք մեկնում այժմ և ինչով եք զբաղվում առհասարակ:

— Որպես տուրիստ, մեկնում եմ այնտեղ, որտեղ Բայրոնը առաջին անգամ հանդիպեց հայերին և ուսումնասիրեց մեր լեզուն: Այնուհետև մեկնելու եմ այն քաղաքը, ուր պահվում է Շոպենի սիրտը: Հետո վերադառնալու եմ հայրենիք՝ մեծահռչակ Այվազովսկու ծննդավայրը և զբաղվելու այն գործով, ինչով զբաղվում էր «Իշխան Իգոր» օպերայի հեղինակը, երբ նա Պետերբուրգի ռազմա-վիրաբուժական ակադեմիայի պրոֆեսոր էր: Իսկ ի՞նչ մասնագիտություն ունեք դուք:

— Ես աշխատում եմ գիտության այն բնագավառում, որտեղ հայտնի դարձավ աշխարհի առաջին կին պրոֆեսորը: Կարծում եմ մենք իրար հասկացանք, չէ՞:

— Այո՛,— պատասխանեց տղան:

— Դուք հասկացաք,— միջամտեց երրորդ ուղևորը,— իսկ մե՞նք:

— Դուք էլ փորձեցեք:

Կազմեց ԽՈՐԵՆ ԴԱԴՅԱՆԸ

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Մեկտեղ են քնում,
Մեկտեղ արթնանում,
Դեմքից վ.ա են
Նրանք միշտ լինում:

Ջրում հանգիստ
Լող կտա,
Հրում կայրվի՝
Շող կտա:

*ՎՐԵԺ ՎԱՐԴՈՒՆԻ*

Աղմկում է նա
Ինչպես ջրաղաց,
Թխում ձեզ համար
Քաղցրահամ բաղարջ:

Աման ունեմ
Պատերը՝ կիր,
Մեջը լիքը
Սնունդ ընտիր:

Արմատն՝ ամպերում,
Ճյուղերը՝ հողում,
Երբ նա ծնվում է,
Գետինն է դողում:

*ԱՐԱՄ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ*

Ման է գալիս,
Ոտքեր չունի,
Շապիկ ունի՝
Կարեր չունի:

Ծնված օրից կպչում է քեզ
Ու մինչև մահ չի պոկվում:
Նրանով ես հազարավոր
Մարդկանց միջից դու ջոկվում:

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

## Պատասխանում ենք

### «ՊԻՈՆԵՐ» № 12

«Խաչբառ» 1. Լոռի: 2. Լուվր: 3. Սավա: 4. Սոչի: 5. Կարոս: 6. Կրիա: 7. Արիա: 8. Արգո: 9. Յանա: 10. Յագո: 11. Վադր: 12. Վարդ: 13. Նոտա: 14. Նորա: 15. Ագրա: 16. Ագան:

«Խճիկ—կտտակներ» 1. Մարդկանց արժանիքը կախված է ոչ թե տարազների քանակից, այլ նրանց ձայնի ուժից և շրջակա մարդկանց ընկերությունից: 2. Երկուսն էլ կլինեն նույն հեռավորության վրա:

«Ազատ ժամին» — 27 եռանկյունի:

«Կարո՞ղ ես» —

| | | | |
|---|---|---|---|
| 0 | 14 | 13 | 3 |
| 11 | 5 | 6 | 8 |
| 7 | 9 | 10 | 4 |
| 12 | 2 | 1 | 15 |

«Հանելուկներ» — Հանդերձապահարան: Մուխ: Միածան: Շրթունքներ: Ամպ:

Գինը 20 կ.

# ԱՂՋԻԿՆ ՈՒ ՁՆԾԱՂԻԿԸ

*ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ*

Ինդեքս 77806

Ջերմ համբույրներից արևի շողի
Ծնվեց ձյան նման մի ճերմակ ծաղիկ,
Զարդարեց հողի ճակատը շիկնած,
Ցող աչիկներով աշխարհին ժպտաց,
Նրա մոտ վազեց, ինչպես թիթեռնիկ,
Ալվարդ թշերով մի սևա՛չ աղջիկ.
— Ո՞վ ես դու, ասա՛։
— Քո քույրիկն եմ ես։
— Որտեղի՞ց եկար, քույրիկ ժպտերես։
— Հողից ծնվեցի, ծնվեցի ձյունից,
Գարուն բերեցի ես հեռուներից։
— Իսկ թե քեզ պոկեմ ու տանեմ մեր տուն,
Էլ չի՞ գա գարուն,
Չի՞ երգի առուն...
— Իմ մայր հողից դուրս կյանք չեմ ունենա,
Եվ առանց ինձ էլ գարունը կգա
Ու նոր ծաղիկներ իր հետ կբերի,
Սարում ու դաշտում թավիշ կփռի...
Բայց մի՛ պոկիր ինձ, թող ես էլ ապրեմ,
Քույրիկներիս հետ դաշտը զարդարեմ։

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

